«ՄԻՏՔ» ՎԵՐԼՈՒԾԱԿԱՆ ԿԵՆՏՐՈՆ

# ՋԱՎԱԽՔԻ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՀԵՔԻԱԹՆԵՐ ԵՎ ԶՐՈՒՅՑՆԵՐ



Երևան, 2012

ՀՏԴ 398=919.81
ԳՄԴ 82.3 Հ
Ջ 360

*ԿԱԶՄՈՂՆԵՐ՝*
*պատմական գիտությունների թեկնածուներ*
*Վահե ՍԱՐԳՍՅԱՆ, Էդուարդ ԱԲՐԱՀԱՄՅԱՆ*

Ջավախքի ժողովրդական հեքիաթներ և զրույցներ / «Միտք» վերլուծական կենտրոն,
Ջ 360 Կազմ.՝ Վ. Սարգսյան, Է. Աբրահամյան.-Եր.:«Միտք» վերլուծական կենտրոն, 2012.-160 էջ:



Ներկայացվող ժողովածուում առաջին անգամ փորձ է արվել մինչ օրս գրի առնված և տարբեր տեղերում հրատարակված Ջավախքի ժողովրդական հեքիաթներն ու զրույցներն ընթերցողին ներկայացնել մեկտեղված տեսքով:

ՀՏԴ 398=919.81
ԳՄԴ 82.3 Հ

ISBN 978-99941-2-649-1

# ԵՐԿՈՒ ԽՈՍՔ ԱՅՍ ԳՐՔԻ ՍՏԵՂԾՄԱՆ ՄԱՍԻՆ

Սույն ժողովածուի հիմքը կազմում են մի քանի հրատարակություններ:

**Առաջինը՝ «Պիոներ»** ամսագիրն է, որի 1983 թ. 6-րդ համարում **Մկրտիչ Կորյունի** մշակմամբ տեղ է գտել Ախալցխայի բանահյուսության մեկ նմուշ՝ *«Երեք թագավոր և մեկ նավավար»* վերտառությամբ հեքիաթը:

**Երկրորդը՝** Հայոց Ազգագրական ընկերության Ախալքալաքի մասնաճյուղի կողմից 1911 թ. Ալեքսանդրապոլում հրատարակած **«Պառավաշունչ»** գրքույկն է, որտեղ տեղ են գտել հայ նշանավոր ազգագրագետ և բանահավաք Ե. Լալայանի կողմից գրի առնված Ջավախքի ժողովրդական չորս հեքիաթներ:

**Երրորդը՝** ՀՍՍՌ ԳԱ Հնագիտության և ազգագրության ինստիտուտի կողմից հրատարակած **«Հայ ժողովրդական հեքիաթների» IV հատորն է (Երևան, 1963)**, որտեղից վերցրել ենք Ջավախքի ժողովրդական հեքիաթների հաջորդ չորս գործերը:

Չնայած *«Հայ ժողովրդական հեքիաթների»* IV հատորում Ջավախքի ժողովրդական այս ութ հեքիաթների տեղ գտնելուն, մենք նպատակահարմար ենք գտել առաջին չորս հեքիաթները վերցնել հիշյալ *«Պառավաշունչ»* ժողովածուից, քանի որ այն հրատարակվել է նախաձեռնության հեղինակի՝ Ե. Լալայանի կենդանության օրոք և լեզվաոճային առումով ավելի հարազատ է Ջավախքի բարբառին: Բացի այդ, ՀԺՀ IV հատորի նշյալ չորս հեքիաթները նույնպես արտատպվել են *«Պառավաշնչից»:*

Մնացյալ չորս հեքիաթներից, որոնք վերցված են *«Հայ ժողովրդական հեքիաթների»* IV հատորից, երեքը ՀՍՍՌ ԳԱ Հնագիտության և ազգագրության ինստիտուտը հրատարակել է արխիվային ձեռագրերի հիման վրա: Այդ ձեռագրերը պահպանվում են Բանահյուսական արխիվում (Երվանդ Լալայանի ֆոնդ, գործ 1, N 899), վերջիններիս վրա դրված է «Ե. Լալայանի խմբարշավ» կնիքը: ՀԺՀ IV հատորի մեկ հեքիաթ էլ, որը զետեղել ենք սույն գրքույկում, իր հերթին արտատպված է «Ազգագրական հանդեսից» (19-րդ գիրք, էջ 158): Հեքիաթը գրի է առել Ե. Լալայանը:

*«Օրթմա»* վերնագիրն ունեցող հաջորդ՝ 9-րդ հեքիաթը, վերցրել ենք **«Հրեղեն ձին» ժողովածուից** (*«Հրեղեն ձին»*, մշակեց և վերապատմեց Սերգեյ Վարդանյանը, Երևան, 1981):

Հաջորդ երեք հեքիաթները (ըստ հերթականության՝ 10-րդ, 11-րդ և 12-րդ հեքիաթները) մեր կողմից վերցված են մեկ այլ՝ **«Թագավորի երազները» ժողովածուից** (*«Թագավորի երազները», (Բանահյուսական ժողովածու),* կազմեց, ծանոթագրեց և հրատարակության պատրաստեց Սերգեյ Վարդանյանը, Երևան, 2003):

Այժմ երկու խոսք վերջին երկու ժողովածուների մասին: Ինչպես արդեն նշեցինք, ժողովածուները հրատարակել է մեր օրերի հայտնի ազգագրագետ, բանահավաք **Սերգեյ Վարդանյանը**, որը տասնամյակներ առաջ՝ 1978 թ., «Պիոներ-կանչի» մայիսյան համարներից մեկում տպագրեց դպրոցականներին ուղղված կոչ՝ գրառելու, կորստից փրկելու ժողովրդի ստեղծած բանահյու-

սական արժեքները: Ահա այս կոչին արձագանքելով, Հայկական ԽՍՀ-ի, ինչպես նաև հարևան Ջավախքի, Արցախի, հայաշատ վայրերի՝ Վրաստանի, Աբխազիայի, Նախիջևանի ու Ադրբեջանի հազարավոր հայ դպրոցականներ շուտով խմբագրություն են ուղարկում իրենց ընտանիքների մեծերից՝ պապիկ-տատիկներից, տվյալ վայրի լեզվառճային նրբերանգներով գրի առնված հեքիաթներ, առակներ, զրույցներ ու ավանդություններ, երգեր, մանկական խաղերգեր, խաղիկներ, հանելուկներ, առածներ և ասացվածքներ: Ստացված հազարավոր նյութերը, շուրջ մի քանի տարի, տպագրվել են *«Պիոներ-կանչ»* թերթի *«Պատանի բանահավաք»* էջում: Իսկ շուրջ հազարի հասնող նշյալ նյութերը նախաձեռնության երախտավոր Ս. Վարդանյանի կողմից խնամքով մշակվել և առանձին գրքով հրատարակվել են, ինչպես վերևում նշեցինք, 1981 թ.՝ **«Հրեղեն ձին»** ընդհանուր վերնագրով: Միաժամանակ՝ կուտակված ողջ նյութը ի պահ է հանձնվել ՀՀ ԳԱ Հնագիտության և ազգագրության ինստիտուտին, որտեղ էլ ստեղծվել է մանկապատանեկան ֆոնդ: Սակայն *«Հրեղեն ձին»* գրքի հրատարակումը ոչ միայն չի դադարեցրել, այլ ընդհակառակը, էլ ավելի է ոգևորել դպրոցականներին, որոնք շարունակել են նշյալ վայրերից ուղարկել նորանոր բանահյուսական գրառումներ, որոնցից մի քանիսը լույս են տեսել *«Ծիծեռնակ»* ամսագրում և *«Լույս Համշենի»* թերթում: Ելնելով այս փաստից, Ս. Վարդանյանը նախաձեռնում է երկրորդ ժողովածուի հրատարակումը, որին տրվել է **«Թագավորի երազները»** խորագիրը: Ցավոք գիրքը լույս է տեսել միայն 2003 թ., չնայած այն պատրաստ էր հրատարակության դեռ 1983 թ.:

Ահա վերոնշյալ երկու գրքերից մեր կողմից գտնվեցին թվով 4 հեքիաթներ, որոնք պատմվել են Ջավախքում, գրի առնվել դպրոցականների կողմից և ուղարկվել խմբագրություն: Հեքիաթներն առանձնահատուկ են ինչպես լեզվառճային, այնպես էլ՝ բովանդակային առումներով: Բավական է նշել այն փաստը, որ սույն հեքիաթներում պահպանված՝ Նոյի ու աստվածաշնչյան Հայր Աբրահամի մասին տեղեկությունները գրեթե բացակայում են այլ վայրերից գրառված հայ բանահյուսական գործերում:

Ժողովածուն զարդարող հաջորդ 4 հեքիաթներն առաջին անգամ հրատարակվել են Գուգարք աշխարհի երկու գավառները՝ Ջավախքն ու Թռեղքն իրար համակցող Ծալկայի շրջանի հայ ազգագրության և բանահյուսության նվիրյալ, նույն շրջանի Ղուշչի գյուղի բնակիչ, վաստակավոր մանկավարժ **Հակոբ Միքայելյանի** կողմից՝ **«Ծալկայի հայերի ազգագրությունը և բանահյուսությունը» գրքում (Երևան, 1998)[1]:** Նշյալ հեքիաթները Հ. Միքայելյանի կողմից գրի են առնված հենց ծալկացիների միջավայրում և ներկայացնում են Ծալկայի հայության շրջանում արմատացած պատկերացումները տարբեր երևույթների մասին: Բանահավաք Հ. Միքայելյանը, փաստորեն, իր այս քայլով կորստից փրկել և սերունդներին ի պահ է տվել Ջավախքի ազգագրության և բանա-

[1] « Ծալկայի հայերի ազգագրության և բանահյուսության» նյութերի հավաքագրող և շարադրող հեղինակ Հակոբ Սարգսի Միքայելյանը ծնվել է 1915 թ., Ծալկայի շրջանի Ղուշչի գյուղում: Շուրջ 52 տարի աշխատել է որպես մանկավարժ Ծալկայի հայկական դպրոցներում, զբաղեցնելով տարբեր պաշտոններ, հասնելով Վրաստանի հանրապետության վաստակավոր ուսուցչի աստիճանի, միաժամանակ տպագրվել է հայկական, ռուսական և վրացական մամուլներում: Շուրջ 700 տպագրված հոդվածների հեղինակ է: Քսան տարի թղթակցել է «Սովետական Վրաստան» թերթին, որպես արտահաստիքային թղթակից: Վրաստանի ազգային ակադեմիայի Վախուշտու անվան աշխարհագրական ընկերության անդամ է, Հայկական հանրագիտարանի հեղինակներից է: Ղուշչի գյուղի դպրոցում հիմնադրել է ազգագրական թանգարան *(սույն կենսագրականը վերցրել ենք «Ծալկայի հայերի ազգագրությունը և բանահյուսությունը» (Ե., 1998) գրքից (ծնթ. կազմ.)):*

հյուսության համաստեղությունը ամբողջացնող ժողովրդական հեքիաթների մի փունջ:

Ծալկայի բանահյուսության նշյալ նմուշների՝ ժողովրդական հեքիաթների կողքին նպատակահարմար համարեցինք զետեղել նաև Հակոբ Միքայելյանի նշյալ գրքում տեղ գտած և *«Զանազան պատմություններ»* խորագիրը կրող նյութերը (թվով 12 հատ), որոնք թեև փոքրիկ գործեր են, սակայն իրենց մեջ պարունակում են ծալկացիների շրջանում ստեղծված հետաքրքիր ու կարճ պատմություններ, որով էլ առանձնանում են իրենց կարևորությամբ:

Ժողովածուի վերջնամասում զետեղել ենք **Վաղարշակ Մադոյանի** կողմից 2003 թ. հրատարակված **«Մեր Ջավախքի զրույցները»** գրքույկի նյութերը՝ թվով 12 զրույց, որոնց միջոցով փորձեցինք առավել հարստացնել սույն ժողովածուն, իսկ Ջավախքի հոգևոր գանձարանը դարձնել առավել ճանաչելի:

Փաստորեն, սույն պատկերազարդ գրքույկում տեղ են գտել մինչ այժմ գրի առնված և տարբեր կերպ հրատարակված Ջավախքի ժողովրդական 17 հեքիաթներ[2], 12 փոքրիկ պատմություններ և 11 զրույցներ: Վերջիններիցս առաջինը մշակվել և հրատարակվել է 1983 թ.՝ Մ. Կորյունի կողմից, 5-ը գրի է առել Հայոց մշակույթի հենասյուներից մեկը հանդիսացող ջավախքյան մշակույթի երախտավոր, Ջավախքի ազգագրության և բանահյուսության մեծ նվիրյալ Երվանդ Լալայանը, իսկ մնացյալ 3-ը գրի են առնվել վերջինիս կողմից 1911-1916 թթ. ղեկավարած խմբարշավի արդյունքում՝ հայ ժողովրդական բանահյուսության այլ նվիրյալների կողմից: *«Էրզրումում մարդ չեղավ, Ստամբոլում աղա էղավ»* վերնագիրը կրող հեքիաթը չի ներառված ՀԺՀ IV հատորի *«հիմնական տեքստեր»* բաժնի Ջավախքի հեքիաթների շարքում, այստեղ կա միայն յոթ հեքիաթ: Նշված հեքիաթը հատորի խմբագիրը տեղադրել է նույն գրքի «1-ին հավելված» բաժնում («1-ին հավելված» բաժնում զետեղված են այն հեքիաթները, որոնք բովանդակությամբ թույլ են, չունեն գեղարվեստական-պատմողական այն վարպետությունն ու արժեքը, ինչ-որ հիմնական տեքստեր բաժինը): *«Կախարդ Արապը»* հեքիաթը վերցրել ենք ոչ թե ՀԺՀ IV հատորի *«հիմնական տեքստեր»* բաժնի Ջավախքի հեքիաթների շարքից, այլ նախընտրել ենք նույն հեքիաթն արտատպել *«2-րդ հավելվածից»* (այստեղ զետեղված են հատորի հիմնական տեքստերից վերցրած՝ յուրաքանչյուր խմբից մեկական հեքիաթ, տվյալ տեղավայրի խոսվածքի ձևաբանական ու արտասանական առանձնահատկությունների գիտական ճշգրիտ տառադարձությամբ): Ինչպես արդեն նշեցինք՝ ժողովածուի հերթական 4 հեքիաթները դպրոցականների կողմից գրառվել են Ջավախքում, որով և՝ փրկվել կորստից, իսկ հեքիաթների վերջին քառյակը գրառված է Ծալկայում, գրառողը և սկզբնական (1998 թ.) հրատարակիչն է Հ. Միքայելյանը:

Գիրքը կազմելիս հավատարիմ չենք մնացել ՀՍՍՌ ԳԱ Հնագիտության և

[2] 2012 թ. սկզբներին «Միտք» վերլուծական կենտրոնի կողմից և ՀՀ սփյուռքի նախարարության ֆինանսական աջակցությամբ հրատարակվեց **«Ջավախքի ժողովրդական հեքիաթներ»** ժողովածուն, որտեղ ներառված են թվով 8 հեքիաթներ: Ցավոք, մեզ՝ ժողովածուն կազմողներիս, մինչ այդ հայտնի չէին բանահավաք Ս. Վարդանյանի կողմից հրատարակված նշյալ երկու ժողովածուները, ինչպես նաև *«Պիոների»* պարունակած հեքիաթը, իսկ Հ. Միքայելյանի *«Ծալկայի հայերի ազգագրությունը և բանահյուսությունը»* (Ե., 1998) արժեքավոր հրատարակությունը գրքի սղության պատճառով մեզ հասանելի դարձավ բավականին ուշացումով: Նշյալ գործերը մեր ձեռքի տակ ունենալուց հետո ձեռնամուխ եղանք գրքի լրամշակված վերահրատարակմանը, որով էլ փորձեցինք շտկել նշյալ բացը:

ազգագրության ինստիտուտի *«Հայ ժողովրդական հեքիաթներ»* հատորյակի` հեքիաթների դասավորման սկզբունքին, այն է` սկզբում դնել հրաշապատում (կախարդական), ապա իրապատում (կենցաղային) հեքիաթները: Գրքում հեքիաթները դասավորել ենք` սկզբում բերելով Ախալցխայից գրառված հեքիաթը, այնուհետև` բնագրային հերթականությամբ դնելով *«Պառավաշնչի»* և ՀԺՀ IV հատորյակից արտատպվող հեքիաթները, որոնց էլ հաջորդել են Ս. Վարդանյանի *«Հրեղեն ձին»* և *«Թագավորի երազները»* ժողովածուների, ինչպես նաև` Հ. Միքայելյանի աշխատության նյութերը: Հակառակ սրան` բոլոր հեքիաթներն արտատպելիս վերջիններս չենք ենթարկել որևէ խմբագրական, սրբագրական, լեզվաոճական կամ այլ կարգի փոփոխման: Հեքիաթներն արտատպված են *«Պիոներից»* և *«Պառավաշնչից»*` այնպես, ինչպես կան, պահպանել ենք նաև ՀԺՀ IV հատորի խմբագրական կոլեգիայի և կազմողների, ինչպես նաև` Ս. Վարդանյանի և Հ. Միքայելյանի բոլոր մշակումներն ու իրականացված խմբագրական-սրբագրական աշխատանքները:

Վերջում ավելացնենք, որ սույն ժողովածուի յուրաքանչյուր հեքիաթի վերջում արտատպել ենք տվյալ հեքիաթի անձնագիրը, որի միջոցով ընթերցողը մանրամասն տեղեկություններ կստանա հեքիաթի ստեղծման թվականի, վայրի, գրի առնողի, հրատարակման աղբյուրի, բարբառային տեսակի և այլնի մասին: Քանի որ *«Պառավաշնչում»* չկան այդպիսի անձնագրեր, ապա այդ չորս հեքիաթների անձնագրերը նույնպես վերցրել ենք ՀԺՀ IV հատորից: Որոշ անձնագրեր արտատպելիս` վերջիններիցս կրճատել ենք այն մասերը, որոնք տվյալ հեքիաթի սյուժեն համեմատում են կամ նմանեցնում ինչպես IV, այնպես էլ նախորդ հատորներում տեղ գտած այլ շրջանների ժողովրդական հեքիաթների հետ:

Ջավախքի ժողովրդական բանահյուսության այս եզակի գանձերը, որոնք պահպանել և մեր մշակույթի երախտավորներին է պահ տվել ջավախահայությունը, իրենց մեջ պարունակում են վերջինիս նիստ ու կացի, կենցաղի, տարբեր սովորույթների ու հավատալիքների բոլոր արտահայտչաձևերը: Սյուժեներում ամենուր գերիշխում է արդարությունը, որն արտահայտված է թագավորի, արդար դատաստանների, դավաճաններին, չարերին անխնա պատժելու իրողությունների տեսքով: Այսպիսի հեքիաթների առկայությունը վառ ապացույցն է այն բանի, որ արդարություն կոչված վեհ ու մարդկային զգացումն ի սկզբանե արմատացած է եղել ջավախահայության գիտակցության մեջ, զգացում, որը ծնվելով յուր էթնիկ բնօրրանում ապրող հայ ազգի այդ հատվածի հետ` ապրում է նրանից անբաժան:

Ի վերջո` այս հեքիաթներն անփոխարինելի շտեմարան են նրանց համար, ովքեր կուզենան առավել մոտիկից ծանոթանալ հայոց մայր բարբառներից մեկի` «կը» ճյուղին պատկանող Կարնո հիասքանչ բարբառի հետ, որից քիչ է տարբերվում Ջավախքի (Ախալցխա-Ախալքալաք-Ծալկայի) գավառաբարբառը:

Հնարավոր է հրապարակի վրա լինեն Ջավախքի ժողովրդական բանահյուսության այնպիսի նմուշներ, որոնք համապատասխանում են սույն հրատարակության բովանդակությանը, հրատարակվել են տարբեր վայրերում, սակայն, մինչ օրս մեր համար եղել են անհայտ: Շնորհակալ կլինենք, եթե այդ-

պիսիք հայտնաբերվելու դեպքում փոխանցվեն մեզ: Վերջիններս անպայման կկցվեն սույն ժողովածուի նյութերին և կվերահրատարակվեն:

պ.գ.թ. Վահե ՍԱՐԳՍՅԱՆ

## ԵՐԵՔ ԹԱԳԱՎՈՐ ԵՎ ՄԵԿ ՆԱՎԱՎԱՐ

(Ախալցխայի բանահյուսությունից)

Մի թագավոր նավակով ծով է դուրս գալիս: Ափից հեռացած-չհեռացած, այնպիսի փոթորիկ է բարձրանում, որ ոչ լեզվով է հնարավոր պատմել, ոչ գրչով գրել: Թագավորը, որի կյանքը մազից էր կախված, հրամայում է նավավարին.

Նավը այնպես տար,
Նավը այնպես տար,
Որ իմ պալատն ինձ
Հասցնես անվքար...

Իր գործին գիտակ, հմուտ և սառնասիրտ նավավարը չլսելու է տալիս թագավորի ասածը: Նա լավ գիտեր, որ թագավորը գիտի հրաման տալ, իսկ նավ վարել չգիտի: Թագավորն ավելի կատաղած, քան ծովն ու փոթորիկը, նորից է ձայնում.

Նավը այնպես տար,
Նավը այնպես տար,
Որ իմ պալատն ինձ
Հասցնես անվքար...

-Թագավորն ապրած կենա,- խոսում է նավավարը,- այստեղ երեք թագավոր կա, որի ն լսեմ:

Թագավորը զարմացած շուրջն է նայում: Չորս կողմը ալեկոծված ծովն է:

-Չ՞է որ ծովի վրա միայն ես էի, ի՞նչ երեք թագավորի մա-

սին էիր խոսում,- երբ վերջապես ափ են իջնում, հարցնում է նա:

-Թագավորն ապրած կենա,- ասում է նավավարը,- թագավորներից մեկը ալեկոծված ծովն էր, մյուսը՝ դու, ծովից ու փոթորկից ոչ պակաս մոլեգնած:

-Իսկ ո՞վ էր երրորդ թագավորը:

-Երրորդ թագավորը ես էի: Իր գործի մեջ հմուտ մարդը իր գործի թագավորն է:

Թագավորը առատ-առատ վարձատրում է նավավարին նավը հմտությամբ ափ հանելու և խելացի պատասխանի համար:

Մշակումը՝ **Մկրտիչ Կորյունի**

**«Պիոներ», 1983 N 6, էջ 27:**

## ԱՆԹԻՒՈՒ ԱՇԽԱՐՔ ԷՐԹՑՈՂ ՏՂԱՆ

Ըլլի կը չի ըլլի՝ մէ թաքաւորմ գըլլի: Ատիկ կուհենայ կը իրեք տղայ: Տղաքն օր հասնին կը՝ թաքաւորը կըսէ կը թը՝ էկէք ղայեօղներդ ցկէք, ում դուռն օր ընկաւ՝ անոր աղջիկը առնենք ծեզի: Գուգան ցկեն կը, մեծծին գըյնի կը մէ հարըստիմ, միջնակինը՝ մէ իշխընիմ դուռ, ատոնց աղջիկները կառնեն: Պզտըկինը կերթայ ծովին ղրաղը մէ գորտիմ' փոր խրի կը: Տղան կերթայ տեսնի կը գորտը, կըսէ. «Հըլպտ իմ բաղդս ա աս էր», վերցընէ դնէ կը եաղլուխիմ' մէջ բերէ կը հորը: Հարը հորստիկը վրան ու գուզէ օր տղին գլխատել տայ. իշխընները, մարը մէջ գըյնին, թաքաւորին հերսը գիջեցնեն: Տղան աղաչէ կը թը՝ գորտը մէ օթախմ' ցկեն, էրթայ մնայ: Տանին մէ մունտառ օթախմ' ցկեն կը վար: Տղան մէկալ օրը գուգայ օր գորտը տեսնի, սիրտը քաշէ կը, չի համբիրէ, տեսնի կօր ան մունտառ օթախը հայլի է դառէ, գորտն ա մէ քօշամ քուչուրեր է: Կառնէ անմէն ինչ, խառնէ կը իրար ու գելլէ դուս, դռան յետևը պահ մտնի կը, ծակէն կաշէ: Մէնմ տեսնի կ'օր գորտը վրայէն փոստը ցկեց ու էրկնային լուս աղջիկմ' դառաւ: Անոր շախուէն մութ պատերը լուս տուին: Հըմը ջանմսան տղայ, դուռը բանայ ու վազզէ գրկէ ատոր. ատիկ չաշմիշ գլլի օր փախչի էրթայ փոստն հագնի, տղան անորէն առաջ խլէ կը փոստն ու ցըկէ կը թնդիր, վառէ կը: Արթղ գլլին մարթ ու կնիկ, իրար հետ սիրով ապրին կը:

Մէ օրմ' թաքաւորը տեսնի կ'օր իրեն ղոնախանին մէ

շաւխմ' է դիպէ.  մարդ ղրկէ կ'օր իմանան թը ադ ինչէն է: Կեր-թան, գուգան թը՝ ղոնախանին դէմը մէ աղջիկմ' է կայնէ, ան-պէս աղջիկմ' օր՝ սաղ աշխրքին մէջը անգըտնուելիք, լուսն էրեսէն կաթէ կը. ատ շաւխը անորէն է դիպէ: Թաքաւորը դուս գելլէ տեսնի կը ադ աղջկան՝ խելքը գլխէն կերթայ, սիր-տը խմէ կը՝ հըմը ինչ էնես օր իրեն հարսն է: Օրմ' էրկուս՝ ատիկալ զաւթ չի ըլլի, միտքը դնէ կ'օր տղին գլոխը աղէ ու ատոր ինքը առնէ: Կանչէ կը տղին, կըսէ. «Դու պիտի էրթաս ընծի անպէս չատըրմ բերես օր՝ սաղ ղոշունս տակը հաւքի, թը չը՝ գլոխդ կըռել կուտամ: Տղան հասկընայ կը բանը, մո-լորը գըյնի ջանը. խեղճ ու սէֆիլ գուգայ տուն. օ սահաթ կնի-կը դէմ կը վազզէ, փաթթուի կը վիզը, հարցընէ կը թը՝ ընչի՞ է տխրէ: Ան ա բան չի պահէ, կըսէ կը թը՝ թաքաւորը իրմէն ան-պէս չատըրմ ուզեց, օր սաղ ղոշունը մէջը հաւքի: «Աման, կըսէ կնիկը, ատ ա բան է՞ ու, քընը խանում մարիկիս ըսէ թը՝ աղջիկդ ձեր պզտի չատըրը ուզեց, առ տար իրեն»: Ասիկ կերթայ ծովին քէանարը, կանչէ կը խանում մարիկին: Մէ խանում խաթուն կնիկմ' գելլէ դուս: Ասիկ կըսէ կը թը՝ ձեր աղչիկը ձեր պզտի չատըրը ուզեց: Լա'ւ, կըսէ կնիկը, սըկի կը ջրին տակն ու մէմ ա գելլէ երեսը, մէ ղոճա չատըրմ' կու-տայ փեսին: Փեսան շնորհակալ գլլի, ուրախ ուրախ կառ-նէ, տանի կը թաքաւորին, թաքաւորը չատըրը զարնել կու-տայ, սաղ ղոշունը մէջը թօփ գլլի, կէսն ա բաց կը մնայ: Թա-քաւորը մաթ մնայ կը: Նորէն կանչէ կը քովը՝ կըսէ թը՝ պտի թեզմ' էրթաս, կակլի մեծութեան մառջանմ բերեմ, թը չը՝

գլոխդ կռռել կուտամ:

Ասիկ կէնա խեղճ ու սէֆիլ գուգայ կը տուն. կնիկը գիմա-նայ՝ կէնա մօրը քովը ղրկէ կը: Փեսան կերթայ ծովին քէա-նարը կանչէ կը զոնքնչին դուս, աղաչէ կ'օր մէ հատմ' կակլի մեծութեան մառճանմ' տայ: Ա ա կըսէ կը թը՝ ասպէս գընը՝ մէ դևմ' ռաստ գուգայ, իմ կողմէս ըսէ անոր՝ կուտայ կը: Ասիկ ցըցուցած ճամփով կերթայ կը, մէ ղոճա դևմ' ռաստ գուգայ, կըսէ խանում մարիկն ըսաց օր ինծի կակլի մեծութեան մէ մառջանմ' տաս: «Լաւ, կըսէ դևը, քալէ կնկանըս քովը տամ»: Քիչմ' կերթան, տեսնին կ'օր մէ ուրիշ դևմ' է նստէ, մէ ծիծը ցկերը է մէ ուսը՝ մէկալը մէկալ ուսը, փութմ' ա ղուրղու-շուն ցկեր է բերանը չթըր-չթըր ծամէ կը: Աս դևը քաշէ կը թուրն ու կնկանը գլոխը կռռէ կը. կռռիլը գիմանայ՝ արունը կակլի մեծութեան մառջան կռռած թապլէ կը:

«Տէ', կըսէ դևը, ժողվէ ինչքան գուզես»: Ասիկ ծոցն ու ջե-բերը լըլէ կը, կըսէ. «Յերիք է, ալ տեղ չունիմ»: Աղ վախթը դևը ծոցէն հանէ կը եափրաղմ' ու քսէ կը կնկանը գլխուն. կնիկը օ սահաթ սաղնայ կ'ու ծամէ կը ձուքը: Տղան ուրախ ուրախ գուգայ, քանիմ մառջան կուտայ կը թաքաւորին: Թաքաւորը դիա կատղի կը, կանչէ, կըսէ կը թը՝ մարըդ օր մե-ռաւ խազնին բալնեստանը հետը տարաւ, պիտի էրթաս, բե-րես, թը չը՝ սաղ տեղդ անկաճդ թողնիմ կը: Տղան կէնա կեր-թայ ծովին քէանարը, խանում մարիկին կանչէ կը դուս, կա-ղաչէ օր իրեն մէկալ աշխարքը ղրկէ, էրթայ մօրէն խազնին բանլինքը բերէ: Խանում մարիկը դուս հանէ կը կարմիր,

ճերմակ, մէմա սև ծիմ, լողացնէ, շփէ կը, ետև ա հարցընէ կը թը՝ վե՞րը կրնայ ատ տղին անթիու աշխարքը տանի ետ բէրէ: Ճերմակը կըսէ կը թը՝ ես տանիմ բերեմ կը: Տղան նստի կը ծիուն, ծին կըսէ՝ աչքերդ խփէ ու բաց. խփէ ու բանայ կը, տեսնի կ'օր գետնին տակը մէ մութ տեղմ են:

Քիչմ' առաջ կերթայ՝ տեսնի կ'օր, մէ հարսմ' տէյմ'օր բուկը ջրի մէջ խրուած՝ մէալամիշ գըլլի թը՝ ծառաւ մեռայ: Կերթայ քովը, կըսէ՝ ատ ինչէ՞նէ օր տէյմ'օր բուկտ ջուրն էս խրէ ու պուտմ' ջուր չես կրնը խմէ: Անա թը՝ մէմ' դու առաջ ըսէ ո՞ւր կերթաս:

«Կերթամ օր մօրէս խազնին բանլինքը առնիմ տանիմ»:

Լաւ, կըսէ, անտեղ գնացողը եդ չի դառնայ, էակար ետ դառցար՝ կըսեմ: Չըմը տեսնիմ՝ կըսեմ կ'օր մեղք ես, ա'ռ իսի էրկու խնձորը, դռնէն օր նես պիտի մտնիս, էրկու կողքը աւլանմ' ու ղափլանմ' են կապած, մէկը տո'ւ մէկին, մէկալը մէկալին՝ նես մտի:

Ատիկ կ'առնէ խնձորները՝ կերթայ: Կերթայ, տեսնի կ'օր մէ կաշումմ' վրայ մարթ ու կնիկ նստել ծեծկուին կը: Մօտենայ կըսէ կը թը՝ ախր ի՞նչ էք էրէ օր ծեծկուիք կը:- Թը գընը էկէր ետ էկար, կըսենք կը:

Ասիկ ալի առաջ կերթայ, տեսնի կը կնիկմ' մէ ձեռքը կրակի մէջ, օխթը ունկանի պղինձը վրան: Ասոր ա հարցընէ կը թը՝ ինչի՞ ձեռքը կրակը դրեր վառէ կը. ան ա ալի ան կըսէ կը թը՝ անտեղ էրթըցողը ետ չի գայ, թը ետ էկար՝ կըսեմ: Քիչմ'

ա առաջ կերթայ, տեսնի կ'օր մէ ալաղափում, էրկու կուշտը մէ ասլանմ' ու ղափլանմ' են կայնէ, հանէ առաջի հարսի տուած մէ խնձորը մէկին կուտայ, մէկալը մէկալին. ատոնք ետ քաշուին կը, ատիկ դուռը բանայ, մտնի կը նես: Օ ըհաթ անմահական հոտը բուրէ կը, տեսնի կը մօրը լուս կռռած, անթառական ծաղիկ բոլորը բուսած: Կերթայ մօրը ձեռքը պագնէ, կըսէ կը թը՝ հարըս խազնին բանլինքը գուզէ կը: Մարը լցուի կը, գուլայ. «Խազնին բանլինքը իրեն քովն է, կըսէ, անիկ միտքը դրեր է օր՝ քեզի սըպանէ: Առ իսի եափրաղը՝ գընը, ֆէնդովմ բալքի գլոխդ ազատես»:

Ասիկա գուլայ, կէնէ թը փաթթուի, լուսիմ' պէս ձեռքէն գել-լէ. դառնայ կը ետ, գուգայ ան կնկանը քովը, օր ձեռքը կրակին մէջ դրեր, վառէր կը: Անիկ զարմանայ կը, կըսէ. Աֆ-ֆարըմ տղայ, ինսընի չերթցած տեղը դու գնացիր:

Չէ, կըսէ ասիկ, դուն ան ըսէ թը՝ աս ինչի՞ ձեռքդ կը վառես:

«Մեղքս ինչ պահեմ, կըսէ կնիկը, անթիու աշխարքն օր խապ կէնէինք, կաթին մէջ վիրահա ջուր խառնէի կը, հիմի ան է, քաշեմ կը:

Ասիկ կանցնի, կերթայ մէկալին քովը, ալի անպէս հարց ու փորձ կէնէ. անոնք ա կըսեն կը թը՝ անթիու աշխարքը էր-կուսիս աչքն ա դուսն էր, սիրուն հարսմ' ըլլիր՝ ես կը սիրէի, սիրուն մարդմ' ըլլիր, ան կը սիրէր, հիմի ես ասոր կը ծեծեմ թը՝ մեղքը քուկդ է, ան ա ինձի կը ծեծէ, թը քուկդ է, թող դու ուրիշի չըսիրէիր, օր ես ա չսիրէի:

Կանցնի կերթայ առջինին քովը. անա կըսէ կը թը՝ ար-տըւորին օր ջուր տանէի կը, ծառաւ ճամփորթիմ ջուր չտուի, հիմի ես ծառաւ պապակիմ կը:

Տղան կանցնի, ծին կըսէ. «Աչքդ խփէ ու բաց»: Խփէ կ'ու բանայ կը, տեսնի կը իրենց դռան առաջն է. գիջնի, ծին բաց կը թողնէ, կերթայ նես: Կերթայ նես՝ փաթթուի կը կնկանն գուլայ, թը հարըս ինձի սըպանել գուզէ, բանլինքը իրեն քովն է:

«Ախ, կըսէ կնիկը, դուն օր իմ փոստս թընդիր չցկէիր, ես հիմի քեզի ազատել էի»:

Տղան հանուի կ'օր քնի. տեսնի կ'օր ծոցէն բանմ' ընկաւ, վերցընէ կ'օր բանլինք: Մի' սէ մօրը տուած եափրաղը բան-լինք է դառցէ: Ուրախնայ կը, մութէ մութանց կուտայ կը հօրը:

Յարը տեսնի կ'օր աս անգամ ա պըրծաւ էկաւ, կըսէ. «Պտի էրթաս անպէս մէ մէյմունմ' բերես, օր ինքը ըլլի մէ թիզմ', միրուքը օխթը թիզ»:

Կերթայ ալի ծովին քէանարը, խանուս մարիկին կաղա-չէ, կառնէ մէ մէյմունմ', գուգայ: Գուգայ օր թաքաւորը ղոշու-նը կը խաղցնէ, տանի կը կուտայ:

Թաքաւորը կըսէ. «Տէ՜, մէմ' թո'ղ խաղայ, տեսնիմ շնորհքը»:

Մէյմունն օր սաղ զօրքին առաջը չի՜ խաղայ, ետև գու-գայ թաքաւորի առաջ կայնի կ'ու կըսէ. «Թաքաւորն ապ-

ռաստ կէնայ, հարն օր օրդուն աշխատի սըպանէ, անոր ի՞նչ պատիժ պիտի տրուի»:

Թաքաւորը կարմըրի կը, հըմը ի՞նչ պիտի էնէ, սաղ դո-շունը իրեն կաշէ:

«Ինչ օր գուզես», կըսէ:

«Թո'ղ քար կռռի», կըսէ մէյմունը:

Օ' սահաթ թագաւորը քար կռռի կը:

Ղոշունն օր ատ հրաշքը տեսնի կը, ճուայ կը թը` տղին թաքաւոր գուզենք: Արթղ ատ տղան կնկանը կառնէ, թա-քաւոր նստի կը:

Անոնք հասան իրենց մուրազին, դուք ա հասնիք ձեր մու-րազին:

Տպագրվում է Երվանդ Լալայանի «Պառավաշունչ» (Ալեքսանդրապոլ, 1911) գրքույկից (էջ 5-11): Հեքիաթի գրառման հանգամանքների մասին ծանոթություն չկա: Հեքիաթը գրի է առել Երվանդ Լալայանը:

## ԷՐԿՈՒ ԱԽՊԱՐ

Կըլլի չի ըլլի էրկու ախպար գըլլի. մէկը զանկին, մէկալը ֆուխարա: Ֆուխարին ալուրը պարպի կը, կերթայ զանկին ախպօրէն մէ մաղմ ալուր գուզէ կը, թը, ախպար, մէ մաղմ ալուր տո'ւ, ղուրպէք էրթամ քերեմ, կուտամ կը: Ախպարը կըսէ կը, թը դուն տակղ փախուցեր պրծեր ես, էտև ո՞ւրտից պիտի տաս: Ֆուխարա ախպարը տուն կերթայ, կըսէ կնկանը, թէ աղջի, ե'լ, ալլէ ամբարին քեօշաները ու մէկ էրկու հացմ էրա', ես ֆէլս փոխել եմ, ղուրպաք պիտի էրթամ, փարայ վաստկեմ: Կնիկը կալլէ ամբըրին քեօշաներն ու մէ հացմ կեփէ, մարթը կառնէ ատ հացն ու գըյնի ճամփայ: Կերթա՞յ, կերթայ հասնի կը մէշիմ, գելլէ մէ ծառիմ: Քիչմ կենայ կը, կաշէ օր մէ առջմ, գալըմ՝ ու մէմա մէ մուկմ: Գուքան կը ատ ծառին տակ: Ատոնք քիչմ հանգչին կը օրա՝ բանը եարանութեան զարնեն կը, առջն ու գալը կըսեն մկին թը՝ հէչ ի՞չ ունիս, մուկ ախպար: Մուկն ա կըսէ թը՝ կոտովմ' մէմ օսկի ունիմ աս ծառին տակը: Գալին կըսեն թը՝ դու ի՞նչ ունիս, գալն ա կըսէ թը, անտեղ մէ սիւրիւմ օչխար ունիմ, անոնց մէջը, մէ ղօչմ կայ, հըմը՝ անպէս մէ ղօչմ է, օր, ինչ հիւանդ ա օր ըլլի, անոր քեալլան ուտէ, մէկէ մէկ գէլլէ, լաւնայ կը: Առջին կըսեն. Դու ինչ ունիս. ան ա թը՝ ես ան քոչին մէջ վաթցուն գիւկիւմ օսկի ունիմ: Ասոնք բիթտուն մեր մարթը ծառին վրայ կիմանայ: Եփ օր ատոնք կերթան, մուկը հանէ կը իրան օսկեստանքը արէգըկին ակը չորցընելու: Ատ վախթը մարթը վար կիջնի

ծառէն, զարնէ մկին օթքը կոռէ կը ու օսկեստանքը կառնէ կերթայ տուն: Ատոր էքսի օրը կերթայ սիւրիին միչէն ղօչը գողնայ, կուգայ կը տուն: Սապախտանը կանչէ կը թալլալին ու թանպէի կէնէ, թը քընը չարսուն, ճուայ ու ըսէ թը՝ վեվ հիւանդ ունի թող բերէ, ես լաւցընեմ կը: Ատ վախթը թաքաւորին աղջիկը շատ հիւանդ գըլլի: Եփ օր թաքաւորը գիմանայ, կանչէ ատ մարթուն իրեն քովը ու կըսէ կը թը՝ թ'էկէր աղջիկս լաւցուցիր, ի՞նչ օր ուզես, կուտամ կը, թը չը լաւցուցիր՝ գլոխըտ կռռեմ կը:

Մարթը, կըսէ կը, թը լաւցնեմ կը: Էքսի օրը ատ մարթըն է, օխթը պղինձ ջուր կը տաքցընէ ու անքան կը եռցընէ, որ օխթը պղինձ ջուրը մէ պղինձմ դառնայ կը: Ետև ատ մարթը փերել կուտայ թաքաւորի աղչկանը, լողացնէ կը ատ ջրով, պառկեցնէ կը, փերէ ատ ղօչին գլոխը կուտեցնէ: Էրկու օր էտև ատ մարթը կերթայ կը թաքաւորին ղօնաղ, օր տեսնի թը հիւանդը ինչղ է: Թաքաւորը տեսնելուն պէս հրամնէ հրամնէով նես տանի, նստեցնէ կը, մէ լաւմ պատիւ կուտայ, ետև կըսէ կը թը, տէ մուրատ ուզէ, մուրատ տամ: Աս մարթը կըսէ կը թը իմ մուրատս քու սաղութենդ է. եփ օր թաքաւորը շատ զօռէ կը, արթղ ատ մարթը կըսէ թը՝ ինծի պէտք է վաթ-ցուն դաւա, վաթցուն փետատ, վաթցուն մարթ: Թաքաւորը կըսէ թը ատ հէ՞չ, ղայտով բան ուզէ, մալ, ղօվլաթ, փարա ուզէ: Մարթը ջուղապ կուտայ թը՝ թաքաւորն ապռաստ կե-նայ, ուրիշ բան չեմ ուզէ: Թաքաւորը հրամայէ կը թը չէ, ծե-ռաց բիթտուն ուզածնա կուտան կը ու ատ մարթը կերթայ

քռչին միջի օսկին բերելու: Կերթան թը չը՝ մարթը կըսէ թը՝ վերցուցէք ատ քուռչը, քուռչը վերցնեն կը ու տեսնին կը վաթցուն բեռ օսկի, բառնան կը դաւաներուն ու փերեն կը ատ մարթուն տունը:

Էքսի օրը ատ մարթը ղօնախլըխ կէնէ: Մարթիկը կըսեն, աս մարթը տունը հաց չունի ուտելու, մեզի ի՞նչղ կը կանչէ: Յէրնէիսա բիթտուննն ա կերթան կը: Ասոր ախպարը թէնէզիկ չի էնէ ֆուխարա ախպօրը տունը էրթըլու, ինչևիցէ, գուգան զօռով-շառով տանին կը: Նես մտնի կը թը չը, տեսնի կը մինտրները, տան սարքն ու կարգը, զարմանայ կը, կանչէ կը ախպօրը մէ ղրաղ, խոստովանեցընէ կը թը՝ ասքան դօվլաթը ինչղ ծեռք բերեց. ան ա չի պահէ, բիւթտուն պատմէ կը: Ասիկ օր գիմանայ, ինքն ա միտքը թնէ կ'օր ղուրպաթ էրթայ: Եփ օր տուն կերթան, աս զանկին ախպարն է կըսէ կնկանը թը՝ հաց էփէ, ես ա ղուրպաթ պիտի էրթամ, իմ ֆուխարա ախպարս քնաց, մալի փարի տէր էղաւ, ես չե՞մ ըլլի:

Էքսի օրը կերթա կը ան մեշան, ու գելլէ ան ծառը, որին վրայ ֆուխարա ախպարը էլեր էր: Ատ վախթը գուքան առջը, գալը ու մուկը: Առջը ու գալը հարցնեն կը մկին թը, ի՞նչի ես թթուէ, անա թը դուք օր գնացիք մէ մարթմ ծառէն իջաւ, օսկեստանս տարաւ: Գալին կըսեն դուն ինչի ես թթուէ, գալն ա կըսէ կը թը, իմ սիւրիւիս միջէն ղօչս գողցեր են: Առջին կըսեն, դուն ինչի ես մռութտ կախէ. անա կըսէ կը թը՝ իմ վաթցուն կիւկիւմ օսկիս են տարել: Մէմա մուկը վեր կաշէ տեսնի կ'օր ծառին վրայ մարթմ կայ, իմացնէ կը առջին ու

գալին: Առջը մռմռթալէն գելլէ ծառը ու վար գլորէ կը մար-թուն. ետև վար գիջնի, իրեքը ախպար դառնան, զանկին մարթուն կուտեն կը: Ֆուխարա ախպարը գիմանայ օր իրեն զանկին ախպօրը ջանավարները կերել են, շատ տրորւի կը, լըլէ մէ կօտմ օսկի, տանի կը անոր կնկանը. է'հ, կըսէ, ի՞նչ էնենք, ան ա անոր ճակտին գիրն էր. ես իրեն ֆու-խարա վախթըս աղաչեցի, պաղատեցի, օր մէ քիչմ ինծի ձեռք բռնէր, չերաւ, ան չերաւ, հըմը ես կենա չեմ մտեհան էնէ քեզի, առ աս օսկեստանը ու ասով եօլա քընը:

Տպագրվում է Երվանդ Լալայանի «Պառավաշունչ» (Ալեքսանդրապոլ, 1911) գրքույկից (էջ 12-15): Գրի է առել Երվանդ Լալայանը: Գրառման մասին մանրամասնություններ չի հաղորդում:

# ՕԽԽԱ՞Յ

Կըլլի չի ըլլի մէ տղամ գըլլի. աս տղան կպնի կը հօրը եախան, թը՝ ուզես չուզես թաքաւորին աղջիկը ինծի համար պիտի ուզես:

«Օղո՛ւլ, կըսէ հարը, խելքտ գլոխտ ժողուէ, եօրղնիտ գեօրա օտւիտ էրկնցու, դո՛ւ վէ՛վ, թաքաւո՛րը վէ՛վ: Թաքաւորը հէչ քեզի աղջի՞կ կուտայ. գլոխ գալու բա՞ն է»: Հարը տեսնի կ'օր տղան ծուք է էղէ ջանին կպէ՝ հոքին խալաս էնէլու խաթեր, գելլէ կերթայ խնամախօսութեան քարին կը նըստի: Թաքաւորը խնտայ կը վրան ու գլխէն դէաֆ էնելու համար կըսէ թը՝ էկէր տղատ սև ու ճերմակը բերեց, կուտամ կը:

Հարը փոր-փոշման քուքայ տուն: Քուքայ տուն՝ տղին կըսէ թը՝ քեզի չըսի՞ հալիտ կեցի. տիա թափիտ դրեց, ըսաց թը՝ էկէր սև ու ճերմակը բերէ, կուտամ կը:

- Լա'ւ, կըսէ տղան, քալէ ինծի մէ տեղմ նօքար տու, աշխատիմ սև ու ճերմակը փերեմ:

Ատոնք էրկուսը գելլեն կերթան, շատն ու քիչը Աստուած գիտէ, կերթան մէ պաղ ախպրիմ ռաստ քուքան: Վրայ գըյնին մէ կուշտմ ջուր խմեն կը ու օխխա՛յ կէնեն: Օխխա՛յ կէնեն թը չը՝ ախպըրին ակէն մէ էխտիար հալևորմ դուս քուքայ կը ու կըսէ թը ինչի՞ կանչեցիք: Ասոնք զարմանան կը ու կըսեն թը՝ վէ՞վ քեզի կանչեց: Թը՝ դուք Օխխա՛յ չըսի՞ք. իմ անունս Օխխայ է:

- Հա', կըսէ հարը, չիտէինք օր քու անունդ Օխխայ է:

- Է, ատ տղատ ո՞ւր կը տանիս, հարցնէ կը Օխխայը:

Թը՝ տանիմ կ'օր մէկիմ քով նօքար տամ:

- Ինծէն լաւին քովը չես կրնայ տայ, փէ իմ քովս տու, կըսէ Օխխայը:

Յարը րազի գըլլի, հախը կռռեն կը. տղան կուտայ ատոր, ինքը գելլէ կերթայ: Օխխայը ատ մանչուն կառնէ, ախպըրին ակէն կերթայ նես իրան օտան. ինքը նստի կը ու ատոր կըսէ թը՝ առ ինի թարքէն աս թուխթը, ան համայիլը փէ:

Մանչը փերէ կը. Օխխայը բանձր ձէնով կարթայ կը ու կենայ կուտայ տղին, օր տեղը թնէ: Ասոր բանը սալթ ատ գլլի: Օխխայն օր իրեն թխթերը կարթայ կը, աս տղան անկճները կախէ՝ լաւ անկած կէնէ ու բիթտուն սորվի կը: Ատ Օխխայը մէ ըռնտիկ աղջիկմ կունենայ. ատոր սիրտը կպչի կը աս տղին. գողտուց խրատ կուտայ թը՝ հարըս օր քեզի հարցնէ թը բանմ սորվար, չըլլի թը ըսէս սորվայ, ան սայթին գլոխտ զարնէ կը. հէչ մի թւացնէ թը բան գիտես:

Տղին վատան թըմմի կը. հարը քուքայ օր տանի. ուստան տղին հարցնէ կը թը՝ օղուլ, հէչ ինչ սորվար:

Տղան ա թը՝ ինչ սորվեցուցիր, օր ի՞նչ սորվէի:

- Ատպէս է օրա, ել քընը, կըսէ Օխխայն ու տղին ճամփէ կը: Յարը կառնէ տղին կերթայ:

Կերթայ, ճամփան տղան քիչմ ետ կը մնայ ու մէ հրեղէն ձիմ դառնայ, քուքայ հօրն առաջը ֆռֆռակը: Յարը «Օվակ, Օվակ», ձէնէ կը. արի' հրեղէն ձիմ է եկէ, բռնենք: Օվակը ձի է դառէ՝ ո՞ւրտից պիտի գայ: Ձին թռչի կերթայ, ալի տղայ դառնայ քուքակը հօրը քովը: Յարը վրան նեղենակը թը՝

վէ՞ր ջանլամն էիր չքուէ, հրեղէն ձիմ էր էկէ, քովս ըլլէիր, բռնէինք:

- Է, ինչ էնեմ, մատս ֆոտ չէի էրէ, կըսէ տղան:

Քիչմա կերթան. տղան հօրը կըսէ թը՝ քիչմ կամաց քընը ես ահան էկայ: Տղան կենայ ետ կը մնայ, մէ կարմիր կովըմ կը դառնայ, կերթայ հօրը քով, տռճիկ տալէն ասթին անթին վազզէ կը: Հարը չապալամիշ գլլի օր բռնէ՝ չի կըրնը. տղին ձէնէ կը, տղայ չկայ: Կովը ձեռքէ գելլէ: Տղան քուքայ, հարը վրան ճուայ, բոռայ կը թը՝ ո՞ւր չքուար, կովմ՝ էկաւ, բռնէինք, ծմեռս բոլ բոլ կթէինք, ուտէինք: Տղան ձէն չի հանէ: Քիչմ՝ ա կանցնի՝ սիրուն օչխարմ դառնայ կը, հարը կէնայ չապալամիշ գլլի օր բռնէ՝ չի կըրնը. բիրտան օչխարը տղամ դառնայ կը, կաշէ՝ Օվակն է, զարմանայ մնակը: Տղան առաջ քուքայ, կըսէ. «Ափա՞ր, ան հրեղէն ձին ու կովնա՝ օր էկան, ես էի. ըշտը ատպէս հիւնրներ էմ սորվէ. կերթանք քաղաք՝ ես կենայ ձի, կով, օչխար գլլիմ՝ դու տար ծախէ, հըմը չըլլի թը գեամը, կրկալը եա կապը հետը տա՞ս. իմացի օր՝ ակէար չտուիր՝ ես կէնայ քուքամ տուն. հըմը օր տուիր՝ ալ պրծայ, ինծի ազատում չիլլի:

Կերթան տուն, տղան հրեղէն ձիմ՝ գլլի, հարը գեամէն քաշէ տանի կը մեյտանը ծախելու: Հազար ու մէկ միւշտարի թափին կը, սահաթւանմ մէջ ձին լաւ գնով ծախուիկը: Հարը գեամը կառնէ քուքայ տուն:

Իրիկուն գլլի, չիլլի, մէմա աշէս տղան պուպո՞ւստ նէս մտաւ: Մէկալ օրը կարմիր կովմ՝ էղաւ, հարը կէնայ տարաւ

լաւ գնով ծախեց, կրկալն առաւ, էկաւ տուն: Տղան իրիկու-անը կենայ ետ դառձաւ էկաւ տուն:

Մէկալ օրը տղան մէ սիրուն օխչարմ դառձաւ, հարը կապը ցկեց ճիտը, տարաւ մէյտանը: Շէնլիկը էկաւ թոփ էղաւ օչխրին գլխուն, պազար էրաւ, գին տուեց, ան էր՝ պիտի կապէին կռռէին՝ մէ ճերմակ միրուք փիր էխտիարմ՛ էկաւ՝ մէկին տաս գին տւեց, առաւ օչխարը: Մարթը գուզէր օր կապը քանտէ՝ հալևորը չը թողեց: «Չէ, ըսաց մարթը, կապը չեմ ծախէ»:

- Աիան քեզի ասքան ա աւելի, ըսաց հալևորը, կապնա տու:

Շէնլիկը վրայ թափաւ՝ թը ատ կապնա ի՞նչ է, օր դողաս կը վրան, է՞րկու շահու բան, աշխրքին փարան կուտայ, տու էրթայ: Մարթը մէ անքամ խափուի, փարաները կառնէ՝ օչխարը կապը հետը կուտայ, կերթայ: Ատ հալևորը կառնէ օչխարը, կերթայ ախպրին ակէն նես մտնի կը. դու մի՛սէ ատիկ Օխխայն է էղէ: «Ես քեզի մարիֆաթ սորվեցուցի, օր էրթաս աշխարք քանդէ՞ս, կըսէ Օխխայը. աղչի՛ թէզ սաթըրը բեր, օր ասոր գլոխը զարնեմ»: Աղջիկը տեսնի կ՛օր իրեն սիրած տղան է, վազզէ սաթըրը կառնէ պատին ծակը կոխէ կը, գըյնի ասթին անթին, սաքիթը ման քուքայ: Էպպէի օը շո-լոր կուտայ՝ կըսէ կը թը՝ չկայ, չիտեմ ո՞ւր էս դրէ:

«Քոռացա՞ր ասօր, կըսէկը հալևորը, արի, արի օչխարը դուն բռնէ՝ ես գտնիմ. կսկուծ բռնէ չը փախչի:

Աղջիկը բռնէ կը օչխրին կապէն, հարը կերթայ սաթըրը փնտռտելու: Քիչմ՛ օր հեռենակը՝ աղջիկը սաքի թը օչխարը սանը պիտի կապէ. կապը ճիտը փաթթէ կ՛ու բաց կը թողնէ.

իըմը ատ սահաթին օչխարը դոխ կը դառնայ ու թռչիկը: Օխխայն օր տեսնիկը թը տղան դոխ էղաւ փախաւ, ինքնա չալաղան դառնայ գըյնի էտիթին: Գըյնի էտիթին, ան կեր-թայ՝ աս էտիթիէն. մազ մնայ կ'օր հասնի, դոխը թագ դառ-նայ գըյնի թաքաւորին գլխուն. չալաղաննա թաքաւոր կը դառնայ, գիչնի թաքաւորին առաջը, կըսէ. «Էրկինքն էի էլէ, թագս ընկաւ գլոխտ, տու»: Թաքաւորը վերցնէ կ'օր տայ՝ թագը վարդ դառնայ կը. Օխխայն ա աշըղ դառնայ, սազը կը չալէ ու վարդը գուզէ: Թաքաւորը կենէ թը՝ վարդը տայ աշըղին, վարդը ութը հատ կորեկ կը դառնայ, թափի կը վար. աշըղնա խորոզ գըլլի՝ ատ կորեկները կուտէ: Ինչղ գըլլի մէ կորեկմ' թաքաւորին փեշերուն մէջը մնայ կը, խո-րոզն օր օխտը կորեկը կուտէ՝ աս մէ կորեկը աղուէս գըլլի խորոզին խեխտէ կը:

Թաքաւորը նատ պռկանց կը մնայ: Խորոզին օր խեխտէ կը, բիրտան տղամ դառնայ կայնի կը թաքաւորին առաջը: Թաքաւորը կաշէ՝ ճանչէ կը օր՝ իրեն աղջիկը ուզողն էր, կըսէ. «Ղորթ օր սև ու ճերմակը փերիր. աղջիկս քեզի հա-լալ է, տուի օր տուի»: Արթղ օխտը զօր, օխտը գիշեր հարսնիք կէնեն, առօք փառօք պսակեն կը: Անոնք հասան իրենց մուրատին, դուքա հասնիք ձեր մուրատին:

Տպագրվում է Երվանդ Լալայանի «Պառավաշունչ» (Ալեքսանդրապոլ, 1911) գրքույկից (էջ 16-21): Գրի է առել Երվանդ Լալայանը: Գրառման մասին առանձին ծանոթություն կամ տեղեկություն չի տալիս:

# ՊԻՒԼՊԻՒԼԻՆ ՀԷՔԻԱԹԸ

Կայ էր՝ չկայ էր՝ մէ թաքաւորմ կայ էր: Ատ թաքաւորը մէ ժամմ' շինէ կը էր: Շինէ պրծնիկը օրա՝ արարած աշխարիք կուգայ ատ ժամին մայիլ կը մնայ: Մէ օրմա՝ մէ էխտիարմ' կուգայ կաշէ, կաշէ, վերջն ալ թաքաւորին կըսէ կը թը՝ ժամտ լաւ է, հըմը մէ բանմ' պակաս է. թ'ակեար մէ պիւլպիւլմ' բերես ժամիտ մէջը պահես՝ ժամիդ ալ ժամ չի հասնի: Թաքաւորը ատ օր կիմանայ, կանչէ կը իրեն իրեք տղոցը, ու կըսէ կը թը, ծեզնեն վերն օր մէ պիւլպիւլըմ փերէ ինծի, ես անոր կուտամ թախտս ու աս մատնիս:

Գուզէք, գնացէք, պտըտուէք, բալքիմ գտնիք: Իրեք մանչն ալ պատրաստութեն տեսնին, գելլեն կերթան կը: Կերթա՜ն, կերթա՜ն, խիւլասա իրեքի բաժնուող մէ ճամփամ ըռաստ կուգայ: Ասոնք աստեղ կուտեն, խմեն կը, ետքնա քարիմ' տակ մէկ-մէկ նշան դնեն կը ու իրարու խօսք կուտան, օր ետ դառնալներուն անպատճառ գան ատ տեղը, նշանները տեսնին ու թ'ակեար մէկին նշանը փասոտել է (ժանգոտել), անոր իմտըտին հասնին:

Ասոնք գելլեն անմեքը մէ ճամփամ բռնեն կերթան: Պզտի մանչը կերթա՜յ, կերթա՜յ, շատ ու քիչն Աստուած գիտէ, կերթայ հասնի կը մէ քաղաքմ: Կերթայ ատ տեղաց թաքաւորին դռնաղ: Թաքաւորը ատ մանչուն շատ հաւնիկը, ատոր կըսէ կը թը, արի', իմ մինուճար աղջիկս ա'ռ, ինծէն էտև ա թաքաւոր էղի:

Աս մանչը ռազի չի ըլլի, ու կըսէ կը թը, ինքը էկել է մէ պիւլպիւլմ տանելու, դառնայ աղաչանք կէնէ թաքաւորին թը՝ թէ օր քովդ քիչմ խաթր ունիմ, մէ պիւլպիւլմ գտի ինծի իըմար: Եփ օր պիւլպիւլը շինեն բերեն կը, թաքաւորը կըսէ աս մանչուն թը՝ մտի աս պիւլպիւլին մէջը, թևերը շարժէ ու թռի քնը ֆիլան թաքաւորին տանը փանճարան կայնէ, անոնք քեզի նես կառնեն ու իրենց պիւլպիւլին քովը պահեն կը, անոր առնելն ու փախչիլն ալ քու բանդ է:

Տղան ասոր ըսածին պէս մտնի կը պիւլպիւլին մէջը ու թռչի, կերթայ, կայնի կը մէկալ թաքաւորին աղջըկան փանճարան:

Ատ թաքաւորին աղջիկնա շատ ըռնտիկ գլլի, անպէս ըռնտիկ, օր արևին կըսէ կը ե'լ, թը չը ես կելլեմ:

Աղջիկը պիւլպիւլին տեսնիկը թը չը՝ խնդըլուն չի գիտնայ թը ինչ էնէ: Կանչէ կը հօրը, պիւլպիւլը նես կառնեն, շաքրով հաց կուտեցնեն, մէկալ պիւլպիւլին քովը դնեն կը:

Գիշեր օր գըլլի, բիթտուն քնին կը, թաքաւորին աղջիկնա մէննակ ատ օտին օրթան ցկէ կը տեղը ու պառկի կը: Եփ-օր քունը վրա կանցնի, աս մանչը ուսուլով գելլէ կը պիւլպիւլին մէջէն ու քուքայ աս աղջկայ թուշը կըսկուծմ պագնէ կը՝ ու վազզէ կերթայ պիւլպիւլին մէջը մտնի կը:

Աղջիկը վեր թռչի, ճուայ կը, խալայեղները մէկալ օտեցէն կուգան, կրակը վառել կուտայ, ու վախվըխելով քեօշեստանը կաշէ օր՝ իրեն պաքնողին գտնի, ինչքան

պտտիկը, տեսնի կ'օր մարդ չի էրևայ, նորէն պառկի քնիկը:

Մանչը նորէն գելլէ ու առաջուընէն աւելի կսկուծմ պագնէ կը՝ ու փախչի մտնի կը պիւլպիւլին մէջը: Աղջիկը աս անգամիս օր աւարայ տեղը ման գուգայ օր գտնի իրեն պաքնողին, ալ քունը չի տանի, սուտ քուն գըլլի, ինչ է պաքնողին բռնէ:

Քիչմ կանցնի, տղան ալի չի բաքլայէ, չունքի համը բերանն է մնացէ, կելլէ պիւլպիւլին միջէն, կերթայ աղջըկայ քովը, չոքի կ'օր պագնէ, աղջիկը քևերը ցըէ ճիտը, փաթթուի կը: Թէզմ կրակ կէնէ օր տեսնի թը վէվէ բռնածը, կաշէ օր, ինչ աշէ, մէ ճէյրանմ պօյով պուսով աղազաղամ:

Մանչը փաթթուի կը անոր ու կըսէ թը՝ դու իմս ես, ես քեզի համար էմ էկէ: Ատոնք քիչմ սիրուին կը, կաշեն օր լուսը բացուելու վրայ է, խօսք կէնեն օր էլլեն փախչին: Մանչը կըսէ կը թը՝ արի' էրկուսս ա իմ պիւլպիւլիս մէջը նստինք, քու պիւլպիւլտա առնինք ձեռքերս ու թռչինք, էրթանք մեր տունը:

Լաւ գըլլի, կըսէ աղջիկը, հըմը՝ հայրըս անպէս մէ հաւքմ ունի օր, ակեար անոր ըսէ թը ֆիլանը փախել է, քնը գտիր՝ անիկ հոգին կրակը կը ցկէ, ուր է ուր չէ՝ զարնէ սըպանէ, գտնի կը: Ատոր չարան ալ գիտե՞ս ի՞նչ է,- ան է օր՝ հայրըս մէ քանիմ հատ եաղլուղ ունի, թ'ակեար եաղլուղը ձեռքդ ունենաս, հաւքին գալած վախտը ձեռացդ փռես, հաւքը կուգայ եաղլուղին վրայ կիջնի, քեզի վնաս չի տայ: Ինչ ալ օր ըսես՝

ան սահաթուն կատարէ կը: Էրէկ ատ եաղլուղներէն մէ հատմ տուեց իմ խալայեղիս օր վլայ` ըլլի օր հըլը քովը ըլլի, արի ատ խալայեղին ա հետներս տանինք:

Աղջիկը կերթայ խալայեղին կանչէ, փորփրէ, կիմանայ կ'օր եաղլուղը տահա քովն է, ատոր բարքնա կենէ կը, իրե-քով նստին կը պիւլպիւլին մէջը, մէկ ալ պիւլպիւլն ա կառ-նեն իրենց քովն ու ծէքը չը ծէքաց թռչին կը:

Սապախտան թաքաւորն օր կիմանայ թը` նա իրեն աղ-ջիկը կայ, նա պիւլպիւլները, ան սիաթուն արունը գլոխը կը զարնէ, կանչէ կը իրեն ան մէ հաւքը, ու կըսէ կը, թէ ուր է ուր չէ` իմ աղջիկս պիտի բռնես: Դուշը ղանատները բանայ կ'ու թռչի կը: Թռչի՜, թռչի՜, խիւլասա անոնց հասնի կ'ու` վրա-ները քշէ կը թը չը, անոնք թէզմ եաղլուղը բանան կը: Դուշին հերսը կիչնի, քուքայ եաղլուղին վրայ կայնիկը. մանչը քա-շէ կը ղաման ու զարնէ ղուշին գլոխը ցկէ կը: Դուշին գլոխն օր ցըկէ կը, նորէն ճամփայ գէլլեն հասնին կը նշան դրած տեղը, քարը վերցընեն, տակը կաշեն տեսնին կ'օր միջակ աղբօր նշանը անպէս փասոտել է, օր դու պրծար: Մանչը աղջըկան կըսէ կը թը` աղբարս նեղութան մէջ է, կուգա՞ս անոր իմտատ հասնինք:

Աղջիկը ռազի գըլլի, էրթանք, կըսէ, ուր օր կուզես:

Ատոնք նստին կը պիւլպիւլին մէջը, հարց ու փորց էնե-լով կէրթան: Կէրթա'ն, կէրթա'ն շատ գեղեր, քաղքներ կանց-նին, մէմա' մէ քաղքիմ մէջ կիմանան օր` ատիկ ունեցած չու-

նեցածը բըռիկի տուել, փչացուցելէ, ու հիմի ա դափուղար-տակ մինչի բուկը պարտքի մէջ խեղտուած, մէ աղայիմ ճորտ է դարձել:

Աստին գըյնին, անտին գըյնին, խիւլաաա ատոր գտնին-կը, բիւտթուն պարտքերը կուտան, պարտքնտէրերէն կա-զատեն, ու կառնեն հետները ետ կը դառնան: Ատ աղբօր աչքը չի վերցնէ, որ պզտի աղբարը տանի պիւլպիւլը, մէմա ատ աղջկան աչքն խմէ կը:

Ճամբան մէ հորիմ քով նստին կը օրայ՝ ատ մեծ աղբարը կըսէ կը մէկալին թը, ծկակելեմ, մէմ՝ արի կախուի աս հորը պուտըմ ջուր հանէ' խմենք: Պզտի աղբարը անկած կէնէ ու մեծ աղբօր փտած չուանով հորը կը կախուի: Աղբարնէ', զարնէ կռռէ կը չուանը ու աղբորը ցկէ կը հորը: Պզտի աղ-բարը կուլայ, կաղաչէ որ իրեն հանէ՝ աղբարը հէչ տէրը չի ըլլի', ու զոռով կառնէ աղջկան թռչի կերթայ տուն, պիւլպիւլը կուտայ հօրը: Հարը շատ կուրախնայ, պիւլպիւլը կախէ կը ժամը ու պատրաստութեն տեսնի կը որ, իրեն մանչուն պսակէ բերած աղջկանը հետ:

Աղջիկը էկած օրէն նա կուտէ, նա կը խօսի, մռթըւորած նստի կը վար: Յարսնէց օրն որ մօտենայ կը, տղին մարը կուգայ աղջկանը հարցնէ կը թը՝ ինչի՞ ատպէս խեղճցեր, կուրկուրի ծագ ես կտռել: Աղջիկը ալ չի համբիրէ, բանայ կը բերանն ու էղած չեղածը պատմէ կը ու գուլայ:

Թաքաւորն որ ատ գիմանայ՝ աղջկան ասկեար կուտայ,

օր էրթայ բերէ պզտի տղին: Աղջիկը ասկըրին գլուխը ան-ցած կերթայ գըտնի կը հորը, նես կաշէ, տեսնիկը՝ օր իրեն անուշ եարը մէ կոխքին ընկած հոգուն հետ է: Ալ չի համբիրէ սէր ու սէվտայէն, սրտին կրակէն վար կը կախուի, հանէ կը անոր դուս, ձեռքը քսէ փթած տեղերը կը սաղցնէ, կառնէ կու-գայ տուն:

Յարը օխտն օր՝ օխտը գիշեր հարսնիք կէնէ, աս էրկու-սին պսակէ կը, ետև օրթանճա տղին ծեծէ, տնէն վռնտէ կ'ու՝ իրեն թախտն ա կուտայ պզտըլկին:

Անոնք հասան իրենց մուրազին, դուքա հասնիք ձեր մուրազին:

Տպագրվում է Երվանդ Լալայանի «Պառավաշունչ» (Ալեքսանդրապոլ, 1911) գրքույկից (էջ 22-27): Գրի է առել Երվանդ Լալայանը: Գրառման վերաբերյալ այլ տեղեկություններ չկան:

## ԾՈՎՈՒ ԱՂՋԻԿԸ

Կար չկար պալըգճի Ահմետըմ կար:

Այս մարդը ամեն օր կէրթար ձուկ բռնելու:

Օրըմ գնաց ձուկ բռնելու, թոռին մեջը մեկ հատ տաշտեկռնակ ինկավ: Տուն բերեց, դրեց իրեն տոլապը:

Ամեն օր տանը համար միս կը գներ, տունը դներ, որ իրիկուն գա եփե ուտե: Ետ կը դառնար տուն, կը տեսներ որ միսը էփված, տունը ավլած ժողված, մաքրված էր: Քանիմ օր ասպես տեսնելով, մարդը շատ կը զարմանար, ադոր համար միտքը դրեց պահ մտնել և տեսնել, թե ո՞վ է իր տունը հոգացողը: Գնաց փաթթվեցավ խսլին մեջ ու պեքլեմիշ ըրավ: Տաշտեկռնակի մեջ գտնվող ծովու հուրնիկ իրեղեն աղջիկը դուրս ելավ տոլապեն, պաշլայեց ավլել, մաքրել: Թոնիրը վառեց, կերակուրը պատրաստեց, քիչըմ ինքը կերավ, մեկալ մնացածը դրեց թնտիր՝ ծկնորս Ահմետի համար: Գործը պրծնելեն վերջ, երբոր տոլապը պիտի մտներ, Ահմետը իր պահվըտած տեղեն դուրս ելավ, մեկեն բռնեց ու հարցուց.- Ինս ե՞ս, թե ջինս,- այսինքն մա՞րդ ես, թե սատանա:

Աղջիկը ըսավ.- Ես մարդ եմ:

Ահմետը երբոր աղջիկը տեսավ, հավնեցավ ու իրեն կնիկ առավ:

Օրըմ կնիկը բաղնիք էրթալ ուզեց, Ահմետին ըսավ.- Գնա ծովին քեները կայնի ու ճվա. «Քուրըդ նալընները գուզե»:

Ահմետը գնաց, ջուխտըմ ոսկի նալըն առավ, բերավ կնիկը հագավ, գնաց բաղնիք:

Շատրվանից ջուր հանած վախտը, նալընին թեքը ընկավ ջրի մեջ կորսվեցավ: Շատ փնտռեց, ամա չը գտավ, թողեց տուն էկավ:

Աղ օրը թագավորի ձիանքը բերին շատըրվանին վրա ջրելու, ձիերը ջրին մեջը նալընի փայլը տեսնելուն պես խրտնեցան, ջուր չ'խմեցին: Ծառան զարմացավ ու տեսավ, որ ջրի մեջ ոսկի նալընըմ կա: Չամմա հանեց, տարավ թագավորին տվեց: Թագավորը տեսնելուն պես զարմացավ, թե ո՞վ պիտի ըլլի այդ կնիկը, որ էդպես ոսկի նալըն ունենա: Ադոր համար, հրաման հանեց, որ օխտը օրեն գտնին նալընին տերը:

Վեզիրներից մեկը առավ նալընը, փաթթեց բողչային մեջ ու պաշլայեց քաղքի տները պտտիլ: Վեց օր իրար վրա տները պտտեց, ամմա չկրցավ գտնել: Օխտն օրեն հետո գնաց Ահմետի տունը և աղաչեց կնկան, որ իրեն տեղըմ տա նամազ ընելու: Թենպեհ ըրավ, որ բողչան չի բանա: Կնիկը ետևե էղավ, թե բողչի մեջ ի՞նչ կա: Զարմացավ եբ տեսավ իր նալընը:

Վեզիրը աղոթք ընելեն վերջը եբոր գուզեր երթալ, Ահմետի կնիկը լավըմ ծեծելով դուրս վռնդեց՝ իր նալընը գողնալուն համար: Վեզիրը անճախ փախավ ու գնաց թագավորին իր գլխի էկածն ու Ահմետի կնկան հուրի ըլլալը պատմեց:

Թագավորը եք իմացավ այդ բանը, մտածեց Ահմետին մե ղայտայով գլուխն աղել տա ու կնիկը առնե իրեն:

Անմիջապես հրաման ըրավ, որ Ահմետը բերեն իրեն քովը:

Ծառաները գնացին Ահմետին կանչեցին, թագավորը ըսավ.- Գնա' ֆիլան երկրի թագավորի աղջիկը ինծի ուզե:

Ահմետը հազըրվորավ, առավ իր շունը ու գնաց: Շատ գնաց թե քիչ, ճամբուն մի փատ կոտրողի ռաստ էկավ, որ ան-չափ ուժով էր, որ ծառը քոքեն կը հաներ: Բարև տվավ ու ըսավ, որ ինքը կէրթա թագավորին համար աղջիկ կը բերե կը: Փատ կտրողը ուզեց, որ ինքն ալ ընկերանա: Էրկուսը մեկ տեղ ընկան ճամբա ու գնացին: Ճանապարհին ռաստ էկան մե հատ չալղըճու:

Չալղըճին ըսավ.- Բարև ձեզ, ախպրտիքս, ո՞ւր կէրթաք կը:

- Կէրթանք թագավորին համար աղջիկ բերենք:

- Է՜, ինծի ալ հետերդ չե՞ք ընկերացնի:

- Ինչի՞ չէ, գուզես կը, արի,- ըսին:

Երեքը մեկտեղ ճամբա ինկան:

Հանդիպեցան մի ուրիշ մարդու, որը ինչափ ֆռնից հաց ելներ, պիթյունը կուտեր, կենե կըսեր կը. «Ա՜խ մե սոմին, վա՜խ մե սոմին»: Էն ալ հարցուց. - Ախպեր ջան, ո՞ւր կէրթաք:

Ըսին.- Կէրթանք մեր թագավորին աղջիկ բերելու:

Ան ալ ըսավ.- Ինծի ալ հետերդ չե՞ք տանի:

Ահմետն ըսավ.- Ախպեր ջան, դու ֆռնից ելած պիթյուն

սոմինը կուտես կը, կենե կըսես. «Ա՜խ մե սոմին, վա՜խ մե սոմին», մենք քեզի էղչափ հաց ո՞ւրտից գտնինք:

Ֆռնճին ըսավ.- Ես ձեզնից հաց չեմ ուզե, մեննակ թե ինձի ալ ձեզի ընկեր էրեք:

- Շատ լավ, օր անպես ա ա'րի:

Շատ գնացին, քիչ, մի օրվա ճամբա մնաց, որ հասնեն էն թագավորին տունը: Էդ գիշեր գնացին մեկ պառավ նանեի տունը իջան: Հաց կերան, հանգստացան: Պառավը հարցուց.- Ո՞ւր կէրթաք ախպրտիք:

Աիմետն ըսավ.- Կէրթանք կը, ձեր թագավորին աղջիկը մեր թագավորին ուզելու:

Պառավն որ աս իմացավ, ըսավ.- Կսկիծ չէ՞ ձեզի: Ինչքան մարդ էկեր է մեր թագավորի աղջիկը ուզելու, թագավորը տարեր է վիշապի օդան, անտեղ վիշապը ուզողներուն կտոր կտոր ըրեր, կերեր է:

- Է՜, ա՜յ մերիկ, ի՞նչ ընենք, ուզենք, չուզենք պիտի էրթանք:

Պառավը ըսավ.- Ան որ ադպես է, ինձի ալ հետերդ տարեք:

Սապախտան մեկտեղ գնացին թագավորին աղջիկն ուզելու: Թագավորը տարավ վիշապի օդան ու վիշապը բաց թողուց որ ամենքին ուտե:

Աիմետը տեսավ որ իրենց պետք է ուտե, ըսավ.- Կեցեք, առաջ շունը թողնենք, թող ուտե, վերջը՝ մեզի: Շունը մեկեն հասավ վիշապի բկեն բռնեց, խածեց, խածմըծեց վիշապին սատկեցրեց:

Թագավորը երբոր տեսավ, որ տուզաղը չ'ընկան, ըսավ.- Գնացե'ք, էքվան արեք:

Պիթյունը մեկտեղ էկան տուն: Պառավը, որ ֆալճի էր, ըսավ.- Ախպրտիք, էքվան մեզի թագավորը աղուլի գադա պիտի ուտեցնե:

Չալղըճին ըսավ.- Ադ իմ բանն է, երբոր սեղան նստանք, ես իմ չալղին կը զարնեմ, դուք կերակուրի ամանները փոխեցե'ք:

Էքսի օրը գնացին աղջիկը ուզելու: Թագավորը ըսավ.- Արե'ք, մի հաց ուտենք, վերջեն աղջիկը առեք, գնացեք:

Երբոր սեղան բերին, չալղըճին ըսավ.- Թագավոր ապրած կենա, հրաման տո'ւր, չալղիմ զարնեմ:

Թագավորը հրաման ըրավ: էն վախտը, որ չալղըճին կը զարներ, թագավորի խելքը չալղիին գնաց, մեկալ ընկերները կերակուրի ամանները փոխեցին: Չալղին լըմննալեն վերջը, պաշլայեցին ուտելը: Թագավորն ու թագուհին աղուլի կերակուրները կերան, մեկալները՝ լավ կերակուրները: Թագավորը տեսավ, որ խաբվավ, մեկեն կաթ բերել տվեց, խմեց ու լավացավ, հետո միսաֆիրներուն ըսավ.- Էսօր ալ չէղավ, էքվան արեք, աղջիկը կուտամ կը:

Իրկուն էկան: Կախարդ պառավը նորեն աշեց իր ֆալին ըսավ.- Ախպրտի'ք, էքվան թագավորը 40 պղինձ փլավ պիտի էփե՝ էկեր կերաք՝ լավ, էկեր չը կերաք՝ ծեր գլուխը կը կտրե կը:

Սոմին ուտողին քեֆն էկավ.- Ախպար,- ըսավ,- աղկից ղոլայ բան ի՞նչ կա:

Էքսի օրը կենե գնացին թագավորի քով: Թագավորը ըսավ.- Մեկ շերթ ունիմ ձեր քով, էկեր կատարեք, աղջիկը կը տամ, էկեր չը կատարեք՝ ձեր գլուխը կը թռցնեմ: Քառսուն պղինձ փլավ էփել եմ տվե, բոլորը պետք է ուտեք:

Ֆռնճին եբոր իմացավ, ըսավ.- Կեցիր մե ես էրթամ համտես անեմ գամ:

Գնաց աշխանեն պիթյուն կերավ, ամններն ալ թեմեզ սրբեց, պեխերը ոլորեց, էկավ թագավորի մոտ ըսավ.- Հրամանդ կատարեցի:

Թագավորը եբ իմացավ, թե պիթյունը կերեր է, ըսավ.- Գնացեք, էքվան էկեք, աղջիկս էսսա կուտամ կը:

Կենե գլխները կախ թողին գնացին: Պառավը ֆալին նայեց, ըսավ.- Ախպրտիք, էքվան թագավորը ձեզի պիտի տանի քաղքեն դուրս, թոփի պիտի կապե:

Փատ կտրողը որ իմացավ պառվի ըսածը, ըսավ.- Դուք էքվան մե հատ չվան առեք, ես քաղաքը կը շալկեմ, կը տանեմ կը սարին գլուխը կը դնեմ:

Մեկալ օրը, գնացին թագավորին քով, որ աղջիկը տա:

Թագավորը ըսավ.- Էրթանք մե քիչըմ պտտինք, թախքի կերակուրը հազըր ըլլի, գուքանք կուտենք կը, կառնեք աղջիկը կէրթաք կը:

Ելան մեկտեղ գնացին քաղքեն դուրս: Եբ տեսան, որ թա-

գավորը իրենց սպաննել պիտի տա, փատ կտրողը դվանը ծգեց ու քաղաքը վերցուց, տարավ սարին թափին դրեց:

Թագավորը տեսավ, որ ճար չկա, ըսավ.- Քաղաքը տեղը դրեք, աղջիկը առե'ք, գնացեք, ամա ծառ կտրողը խապուլ չէրավ, ըսավ.- Թող անոնք աղջիկը առնեն էրթան, ես քաղաքը իր տեղը դնեմ կը:

Թագավորը տեսավ, որ ալ ճարը չկա, տվեց աղջիկը, առան գնացին: Եբոր քիչըմ հեռացան, ծառ կտրողը քաղաքը տեղը դրավ ու հասավ ընկերներուն:

Էն վախտը որ պիտի բաժնվեին իրարմե, պառավը Ահմետին դասդեմ մազ տվավ ու ըսավ.- Եբոր նեղը գընկնիս, ադ մազերը վառես կը, քեզի օգնական շատ զինվոր գուքա:

Ահմետ առավ ադ մազը, դրեց ջեպը ու աղջիկն առած գնաց իր թագավորին: Աղջիկը բերեց թեսլիմ ըրավ թագավորին, ամա թագավորի միտքը աղջկան բերելը չէր, Ահմետի կյանք կորսնցնելն էր: Ադոր համար հրաման ըրավ, որ Ահմետը զնդան նետեն: Հրամանը կատարեցին. Ահմետը զնդանի մեջ շատ օրեր կենալեն վերջը, օրըմ պառվի տված մազերը միտքը ընկավ, ամմա կրակ հանեց ու կպցուց, մեկ ալ տեսնես սաղ քաղաքը լցվավ զինվորներով:

Բոլոր ժողովուրդը քաշվեցան իրենց տները, մե տղա կար դուրս, զորքերը հարցուցին. «Ո՞ւր է Ահմետը, անոր տեղը մեզի ըսե», տղան տարավ զնդանը ցույց տվեց:

Զորքերը զարկին զնդանի դռները կոտրտեցին, Աhմետին դուրս hանեցին: Աhմետ իր օգնական զորքերով hարձակվեցավ անիրավ թագավորին վրան, սպանեց անոր ու ինքը անոր տեղ թագավոր էղավ:

Տեh, տղաք, քեֆ արեք, Աhմետը hասավ իր մուրադին, դուք ալ hասնիք ձեր մուրադին:



Տպագրվում է «Հայ ժողովրդական հեքիաթների» IV հատորից (Երևան, 1963, էջ 399-403): Գրառման ձեռագիրը պահպանվում է Բանահյուսական արխիվում (Երվանդ Լալայանի ֆոնդ, գործ 1, N 899): Ձեռագրի վրա դրված է «Ե. Լալայանի խմբարշավ» կնիքը: Ձեռագրի առաջին էջի վրա գրված է. «Էրզրումի բարբառով, հավաքեց Արտաշես Բարսեղյանը 1915 թ. 8/12 - Երևան»: Գրառման հանգամանքների մասին ոչ մի այլ տեղեկություն չի հաղորդում

# ՄԻՍՈ

Կա էղե, չկա էղե մե թագավորմ կա էղե: Աղ թագավորը մե օրմ գելլե թապտիր պտըտի կը:

Մե քաղքիմ չարսուին միջեն անցնելու վախտը՝ ինչըխ գըլլի, մտնի կը սամարճում խանութ: Աս սամարճուն էրածը թագավորին շատ զարմացնե կը:

Աղ մարդը զօր գիշեր կաշխատիր էղե, շատ ըռնտիկ, զարդարանքով սամարներ, այարներ շինե կը էղե, ու վերջը նորեն շինածները ջարդե, կտոր բրտուճ կէնե վար թափե կը էղե:

Թագավորը տեսնի կը օր աղ մարդը մե դարդմ ունի օր աղպես կէնե, ադոր շատ կաղաչե կ'օր իրեն գլխուն էկածը-չէկածը իրեն պատմե:

Սամարճին, քանի թագավորը կաղաչե, անքան կամըռնա, չի ուզե օր պատմե:

Արքըղ թագավորն օր ծուք գըլլի կպչի կը, սամարճին տեսնի կ'օր ճար չկա, պաշլայե կը գլխուն էկածը պատմել:

«Ես գեղացի եմ, անունս Միսո է, ունիմ մե մարմ, էրկու հատ ա ախպար: Մենք պզտիկ էինք օր հարերնիս մեռավ: Տեսանք օր՝ օր ավլուր ֆուխարութենը փաթթե կը, ամեն մեկ ախպարս մեկ-մեկ գործի գնացին, ես ա մեր գեղացոց դավաները արծեի կը:

Մե օրմ ա կենա սապախտան կանուխ դավաները տարեր էի չայիրները արծելու, ես ա ելեր բանցր տեղմ նստեր բոքոն կուտեի: Աշեմ իրեք մարդ գուքան: Ասոնք քալով, քա-

լով ինձի մոտեցան, անուշ բարև տվին, քովս նստան ու սկսան ինձի բաներ պատմել: Ետքն ա ըսին, թե. «Օղուլ, դու աստեղ դավա արծելով ի՞նչ պիտի ըլլիս, գուզես քալե էրթանք մեզի հետ, մենք քեզի մեծ փառքի կը տիրացնենք:

Ադ խոսքերն օր իմացա, խնդլուց վեր վեր թռա, գիտեի թե աստված է ղրկե ադ մարդոցը, օր ինձի ադ տանջանքներուն մեջեն պրծըցնեին: Խոսք տվի ու շատ մա շնորհակալ էղա, օր ինձի հըմար ադպես լավութեն գուզեն: Ետև ադոնց միջեն մեկը, օր ամենքեն մեծն էր, ճերմակ միրուքով գլգլան էխտիար, դարձավ ինձի ըսավ թե.- Դե օղուլ, եփ օր գուզես մեզի հետ գալ, դավաներեդ մեկը առ օր էրթանք, օսկի արծաթ ու անգին քարեր բառնաս բերես:

Օսկու, արծթի ձենն օր իմացա, խելըռի պես չը գիտցա, թե ինչ էնեմ: Ինչ օրա դավաներու մեջեն ամենքեն լավը ջոկեցի, հետերս առանք ու ճամփա ընկանք: Շատ գնացինք, քիչ գնացինք, աստված գիտե, գնացինք հասանք մե մեծ կանըռնչոտ տեղըմ: Արտ ըսեմ` արտ չէր, պախչա ըսեմ` պախչա չէր, դրախտը չեմ տեսե, հըմը գիտեմ օր դրախտը ադտից լավ չէր ըլլի: Մեջեն հազար տեսակ անուշ ծաղկներու հոտ գուքար:

Ադտեղեն քիչըմ ա առաջ քնացինք չքնացինք, մե մենծ ղուլամ էրևցավ, անքան ղոճա էր օր գիտես թե ծերը երկնքին էր հասեր, մարդ վրան օր կաշեր օհմռիր կը: Գնացինք ադոր տակը հասանք, նստանք քիչըմ հանգչեցանք, ետև ադ մարդոցեն մեկը ինձի ըսաց թե.

- Ահա, օղուլ, քու ուզած դովլաթդ այսի ղուլային թափան է, մենք դավան մորթենք կը, փորը դարդկենք քեզի մտցնենք կը փորին մեջը, բերանն ա կսկուց կը կարենք: Ետև երկնուց մենծ հավքեր գիջնին, քեզի դավին հետ բանձրցնեն կը տոր ղուլային ծերը, անտեղ դուս գուքաս ու ինչքան օր գուզես օսկի, արծաթ, քարեր ժողվես վար թափես կը, եփ օր բիտտուն, էղած-չէղածը վար լըլես՝ իջնելու ճամփան քեզի սովրեցնենք կը, գուքաս, ախպոր պես հալալ փայ կէնենք:

Ճար չկար, պտի անկաջ էնեի: Ադոնք դավան մորթեցին, փորը դարտկեցին, ինձի ա մտցուցին փորը ու բերանը կսկուծ կարեցին, իրենք ա քնացին գողտուկ տեղմ պահ մտան:

Մեմ ալ շատ անցավ, քիչ անցավ, երկնուց մե ղաթեն օրոտումով հավքերը թափան, վար դրին ու սկսան դավին միսը ուտել քըցըցել: Անքան քըցըցեցին օր չոր օսկոռները մնաց: Մեմ ա հավքերեն մեկը կտուցը անպես զարկեց օսկոռին, օր օսկոռը ծակավ ու հավքին կտուցը թևըս մտավ: Ալ կսկծուս չկրցա դիմանալ, ճվալով օսկռներեն դուս պրծա: Եփ օր աչքս չբացի ու դևի քիսպըթով հավքեր չը տեսա՝ խելքս կորուցածի պես թլպիշ ընկա:

Քիչըմ վախտ անցավ՝ խելքս գլոխս էկավ, չորս բոլորս աշեցի, տեսա օր ալ ինչ, ինչ տեսակ թանկ թանկ բաներ, օսկի գուզես, արծաթ, ալմաս, յաղութ, զմրութ: Խելքս ադոնց էի տվե՝ աշեմ վարեն ճվան կը թե.

- Թեզ էրե, վար թափե էղած չէղածը, մի ուշանա, թե չը հավքերը կենա գուքան քեզի կուտեն:

Եփ օր ադ խոսքերը չիմացա՞, մազերս փուշ-փուշ էլան, հըմը հավար, հավար վար թափեցի, ինչքան օր կրնայի:

Աս վարի մարդիկն ժողվեցին, ակտունանքը լըցին հապիկյաները, մեմ ա աշեմ քարվանըմ էկավ, ասոնք ինչօր կար չկար դավաներուն բարձին, ճամփա ընկան:

Ես է վերեն բաքլայեմ կը, թե ինձի հիմի վար կը տանին, աշեմ օր չէ: Արթըղ ասոնց սկսա աղաչել, պաղատել, հըմը հեչ քաֆարատ չի էնե, թոփ թապլես չի հասնի:

Տեսա օր ալ ճար չկա, ինչ էնեմ, ինչ չէնեմ, վերթին կաշեմ ճամփա չկա, հըմը եփ օր կենա չորս բոլորս թափթփած ակներ չե՞մ տեսնի, սիրտս քիչմ բացվի կը, ես ինձի գյուման կուտամ:

Էդօր իրիկուն ադտեղ մնացի, արթըղ փորս վեց-վեց էրավ, անոթութենը սխմեց, հաց ուտել գուզեմ՝ հաց չկա: Ալ հոգուս հասավ: Դավին միսը կտրեցի, առանց կրակ, հում հում կտորմ կերա: Ինչ էրկնցնեմ, ադպես օխտը գիշեր մնացի ադտեղ, ալ շվարեր էի, չունքի բան չէր մնացե ուտելու, կըսեի թե յա ասօր, յա էքվան անոթութենես մեռնիմ կը: Ադպես մտորեի կը, մեմ ա աշեմ, ուրտից էր ուրտից չէր մե աղվեսըմ դուս պրծավ, ինձի տեսավ թե չէ՝ կենա էկած ճամփան բռնեց ու փախավ: Ես ա հավար, հավար ակտունանքներեն խեյլըմ ջեպս լըցի ու աղվեսին ետըթիեն փորքշի կէրթամ: Տեյ խեյլմ տեղ ադպես գնացի աղվեսին ետըթի-

են, մեմ ա աշեմ աղվեսը ամուրըմ ծվաց, հասկցա օր լուս աշխարիք է ելե, ես ա ձեռքերովս քիչըմ հողը փորեցի, լուս աշխարիքի երես տեսա:

Տոր ղուլին տկեն դուս ելա, անպես էղա օր, գիտեմ թե մըրես նոր աշխարիք էկա: Եփ օր բոլորս չէի աշե՝ խելքս գլխես կէրթար, արթըղ անոթութենես աչքերըս պըլըղըրտեր կը, չորս բոլորս կաշեի, թե բանմ գտնեմ ուտելու: Կենա աստված ընձի չէր մտեհան էրե, դավին մսի կտորտանքներեն մնացեր էին գետնին երեսը, ադոնցով նաիսամ կշտացա, պաղ ջուրմ ա խմեցի ու ճամփա ընկա, ես ա չիտեի, թե ուր կէրթամ: Իրեք զօր, իրեք գիշեր էրթըլով հասա մե տունըմ, դուռը ծեծեցի, մի պառավմ դուռը բացեց, ինձի նես տարավ: Նես մտա տեսնիմ մե ղռնտիկ, ճերմակ միրուք էխտիարմ օճխին գլոխը նստեր չիպուխ քաշե կը: Ադոնց հետ խոշ բաշ էրինք, հաց բերին կերանք, գիշեր էղավ, քնացի քնելու, ուրտեղ օր ինձի տեղ էին ցկե:

Ադ գիշերը հանգիստ անցավ: Սապախտան եփ ծեգը բացվավ, նորեն ելանք վեր, արթըղ անոնք ինձի հարց ու փործ էրին: Ես ա ինչ օր գլխուս անցեր էր մեկ, մեկ պատմեցի:

Ադոնք եփ օր իմացան իմ ղուլային թափան օխտը օր օխտը գիշեր մնալս մատ պռկաց մնացին, չունքի ըսին թե.

- Ադտեղ անպես տեղ է, օր հեչ ադաթ չէ օր մարդ սաղ պրծնի ադ հավքերուն ճանկերեն:

Ետև ա ըսին թե.- Ադ ղուլան ա օր կա, հին կուռքերուն գերեզմանն է, ինչքան օր կուռք է էղե, ադտեղ են լցե իրենց

ունեցած չունեցածովը, ան հավքերն ա որ կան թևավոր դևեր են, որ ադոր մուղաթ կենան կը, չեն թողնե ինսան օղլանի մոտենալու:

- Օղուլ,- ըսաց ադ մարդը,- քուկդ մե հրաշք բանըմ է, որ ադտից ազատվեր ես: Էհ, եփ որ դու ադքան ղոչաղ ես էղե, թե գուզես արի մեզի տղա էղի, մենք առանց տղի ենք մնացե, դու արի մեզմով մխիթարվե, մենք ա՝ քեզմով:

Ադ օրեն ես անոնց տղա էղա:

Անցավ մե քանիմ վախտ, տեսան որ ես սանյաթ չիտեմ, տարան ինձի մե սարաճիմ քով ուստա տվին: Քանիմ տարի ետև սանյաթս լավ սորվա:

Մե օրմ կանուխ քնացեր էի մեր տանը բախչան պտտելու: Աշեմ վերեն իրեք դոխ գիջնին, հըմը ինչ դոխ, աչք պիտի ըլլիր՝ որ տեսներ, բերան պիտի ըլլիր, որ պատմեր, անկաջ պիտի ըլլիր, որ իմանար, ինչ օրա, ասոնք որ վար իջնելու էղան պախչան, ես պահ մտա ծառին քոքին տակը:

Ասոնցեն էրկուսը իջան, մեկալը չէր իջնի, կըսեր թե՝ մարդու հոտ գուքա, աստեղ մարդ կա: Ընկերները շատ հերսոտան թե՝ անքան որ մեննակ դու հոտ կառնիս: Նայիսա իջուցին վար, ես հեռվեն սեյր կէնեի, հըմը ալ հոգիս բնեն ելավ, աշեմ որ, ի՞նչ, աս դոխերը վրայի փետուրները հանեցին, մեկ մեկ աննման, հրեշտակի պես ըռնտիկ աղջիկ դառան, մտան հավուզը լողացան, ես է հըմը չախխի ճոթով ադոնց մեկին փետուրները քաշեցի ինձի, վերուցի պահեցի:

Ասոնք լողացան պրծան, ելան փետուրները առնելու, էրկուսը հագան քընացին, մեկը չպլաղ մնաց: Ասթին գըյնի, անթին գըյնի, չի կրնը գտնի, ես ալ չը դիմացա, էրևցա աչ-քին, ըսի.- Իմ քովս է փետուրներդ, հըմը չեմ տա:

Ասիկ ինձ կաղաչե, ես հեչ անկաջ չերի, գնացի մեր տնեն մե ձեռքմ լավ մարգրիտներով կարած հալավմ բերի, ասոր հագցուցի, տարա տուն:

Քանիմ օր անցավ, ասոր հետ պսակվա: Օխտը զօր, օխ-տը գիշեր քեֆ էրինք, հարսնիքը պրծանք:

Քանիմ տարի անցան, ան մարդիկն օր ինձի հոգևորդի էին էրե, էրկուսն ալ մեռան:

Անոնցեն ետև ադտեղ մնալս էլ նաֆիլա էր, չունքի մարս ու ախպրտիքս միտքս գըյնեին՝ մուխը քթիս պընչըներեն գելլեր, ալ բանիմ չաշեցի, տունս ու պախչաս ծախեցի, ծխեցի, կնկաս հետ ճամփա ընկա, զօր, գիշեր քնացի՝ քառ-սուն օրվան հասա մեր գեղը:

Խեղճ մարս շատ լալուն, տրորվելուն էրկու աչքերն ա քոռցեր էին:

Թախ մորս քովը գալը կնիկս բերեր էր իրեք տղա: Ադոն-ցեն մեծը շան լակոտ էր, օրթանճան՝ խոզի ձագըմ, անմեն-քեն պզտիկը, օր աղջիկ էր, կատվի ձագ էր:

Ադ վախտերը կնիկս շատ աչքես ընկեր էր, չէի ուզեր օր վրան աշեի, էրեսն օր կաշեի, գիտես թե գրողըմ դեմս գելլեր:

Ավուր մեկը կնիկս ինձի ըսաց.

- Քա, ինի իմ հավքի թեպուլներս պահե՞ր ես նե տու, ես անոնցով մորդ աչվիքը լավցնեմ:

Ես հավատալով կնկանս խոսքին, վերուցի տվի: Աղ օրն անցավ, էքսի սապախտանը աշեմ օր կնիկս չկա, անոր տե-ղը մե դոխըմ կայներ է իրեք ծագ ա հետը: Աղիկ իջավ մորս աչքերուն, թրջեց, թեպուլովը սրբեց, մեմ ա մորս աչվիքը բացվան:

Դոխը ծագերուն հետ քնաց կայնավ փանջարեն ու ըսաց թե.

- Թ'ակար դու մեզի գուզես, հագի էրկթե օտըման, առ էրկըթե դըզգանակ, գլոխդ դի էրկըթե քյուլլահ, ճամփա ըն-կի, պտըտի, տոր ատոնք մաշի, եփ օր մաշավ, մեզի գտնիս կը: Աս ըսելն ու ծագերու հետ թռնելը էրթալը մեմ էղավ:

Ես ամեն ինչ հասկցա, ըմա ալ ինչ պիտի էնեի: Աղ օրը տոր իրիկուն նստեր գուլայի կը, մեկալ օրը ալ չհամ-բերեցի, գնացի հագա էրկըթե չարուխ, առա էրկըթե դըզգանակըմ, գլոխս ա դրի էրկըթե քյուլլահըմ ու ճամփա ընկա: Գնացի, գնացի շատ ու քիչը աստված գիտե, հասա ջրիմ քանար: Աղտեղ իրեք ախպար իրար հետ կռվեին կը: Ինծի օր տեսան, կանչեցին ու ըսին թե.

- Մենք իրեքս ախպար էինք, մեր հարը մեռավ, այս իրեք բանը թողեց. մեկը այսի էրկըթե փափաղն է օր վեվ ծածկե, մարդ չի տեսնի անոր, մեկն ա այսի էրկթե չարուխներն են, օր վեվ հագնի՝ դախվանմ մեջ քաղքներ, ծովեր կանցնի, մեկն ա այսի կարպետն է, անպես օր, ինչ օր չուզես՝ ասոր

միջեն գելլե կը: Հիմի մենք չիտենք, թե ասոնք ինչըղ բաժ-նենք, քեզի աստված էր հասուցե հիմի դու պիտի բաժնես մեզի:

Ադ բաները իմացա, ալ ես ինձի կորուցի, աշեցի օր ինձի շատ չարե փրկեն կը, սատանութենըմ մտածեցի, ըսի թե.

- Ես յայեղս թապլեմ կը, առաջինը վեվ օր բերե` փափաղը անոր, ետև մեկալըն ա չարխները, վերջինին ա կարպետը:

Ասոնք հավնան խոսքիս: Յայեղս թապլեցի ու հըմը իմոնքս վար թափեցի` ադոնց քյուլլահը գլոխս դրի, չարխները հագա, կարպետն ա վրես առա ու հայ դե, օդին միջեն թռչելով անպես կէրթայի օր թոփ ըլիր չէր հասնի, հավք ըլիր` չէր կրնա թռչի:

Թռա, թռա, մեմ ա դեմս մե տունըմ էրևաց, տունմ, անպես տունմ, օր պատերը օսկեցե էր, վրան ալմաս ու յաղութ:

Գնացի ադոր դռան առաջը կայնա` չարխներս հանեցի, կամաց, կամաց նես մտա, ինչ տեսնեմ, կնիկս ու իրեք տղա: Նստեր հաց կուտեն, ես ա գնացի, անոնց սուֆրին նստա, հետները հաց կուտեի կը: Կնիկս քշվավ մնաց ու մաթ մաթ բոլորը կաշեր: Կերակուրը իրենք ձեռք չտված` պարպիր կը: Ալ ճարը կտռավ, տղոցը ղրկեց քառսուն հատ խնձոր բերել տվեց, օդին երեսը սափմիշ էրավ, ես ա հա-վարով կուտեի, անքան անուշ էր օր` համեն հոտեն չէի կշտանա: Ետև պաշլայեցի ժողվել խնձորը, կնիկս համրեց տեսավ օր, տասէրկու հատ պակսեր է, մատը խածեց` դար-ձավ ըսաց թե.

- Չրեշտակ ես, դև ես, մարդ ես՝ էրևցի, ինչ օր գուզես կուտամ:

Սիրտս ալ չդիմացավ՝ փափաղս գլխես վար առա թե չէ, կնիկս ու տղաքս վրաս թափան ու լացին: Քիչ քիչ ադոնց սրտերն առա, նստանք անուշ անուշ զրցեցինք:

Աղ օրն անցավ, մեկալ օրը սապախտան կանուխ ելլեմ օր մեծ մանչս մեռեր է: Էհ ինչ պիտի էնեի, փառք կամեցածին, ետըթին էրկու տղա ա ունեի:

Մեկալ գիշերն ա անցավ՝ սապախտան աշեմ օր օրթանճա մանչս մեռեր է: Ադոր ա շատ լացի, իըմը ինչ օգուտ: Կենա ախչիկմ ունեի՝ անիկա հերիք էր:

Խուլաս, ինչ էրկնցնեմ, մեկալ օրն ա ախչիկս մեռավ: Վրա չորս օրն ա աշեմ կնիկս ա մեռավ:

Էհ ալ ինձի ինչ մնաց աշխրքին էրեսը: Տղաքս մեռան, կնիկս մեռավ, ալ ո՞ւմ համար ապրիմ, կէրթամ ես ա ծովը ընկնիմ խեղթիմ կը:

Աղ մտքով գնացի ծովին քանարը, ես ինձի ծովը քցեցի: Մեմ ա ուրտից էր ուրտից չէր մե մենծ ջանավարմ ինձի բերանն առավ, կուլ տվեց ու մտավ ծովին տակը:

Չիտեմ ալ ինչքան եմ մնացե ջանավարին փորը, ավուրը մեկը աշեմ ջանավարին փորին միջեն լուս էրևաց, իըմը կամաց-կամաց սողամ ու լուս աշխարիք էլնեմ:

Կամաց-կամաց քալելով էկա աս աշխարիքն ընկա, բըռնեցի աս խանութը ու նստեր սարծութեն կէնեմ կը, լավ

այարներ շինեմ կը, վրան քաշեմ կը կնկանս ու տղոցս ըլֆաթները: Քանի վրան կաշեմ կը՝ սիրտս կտոր կտոր գըլլի, ուշքս վերնա կը, մարած գըյնիմ վար, ետև խելքս գլոխս գուքա կենա վրան կաշեմ սիրտս թալկըտի կը, հերսս գելլե, կառնեմ ուրաքը կտոր բրտուջ կենեմ, վար լըլեմ կը ու նստեմ գուլամ»:

Խեղճ մարդն օր աս բաները պատմեր կը գուլար ու հեծեծար կը, եփ օր խլսցուց աչքերը շըլրտեց ու մարավ, ընկավ վար:

Տպագրվում է ՀԺՀ-ի IV հատորից (Երևան, 1963, էջ 408-414), ուր տպագրվել է ըստ «Ազգագրական հանդես»-ում (19-րդ գիրք, էջ 158) հրատարակված տեքստի: Գրի է առել Երվանդ Լալայանը: Գրառման հանգամանքների մասին տեղեկություն չկա:

## ԿԱԽԱՐԴ ԱՐԱՊԸ

Կ'ըլլի չ'ըլլի ժամանակով մէ էրիգ կնիգ գըլլին: Իրենք շատ աղքատ գըլլին: Օրըմ կնիգը կէր-թա տնէրէն կօրկօտ, բ'լղուր կը մուրա: Գուքա մարթուն կ'ըսէ կը.- Ա՜յ մա'րթ, քնա' մէ քիչ մէ-շեցէն վառելիք բ'էր, մէ աբուր էփենք, տաք տաք ուտենք:

Մարթը կացին կ'առնէ կը, կ'էրթա մեշէն: Շատ կ'էրթա, քիչ կ'էրթա ռաստ գուքա կը խօշօր քյութուկին: Կացինը զարնէ կը օր մի քանի կտօր փատ կօտրէ, մէ մա տեսնես մէ արապ դ'ուս գուքա ու հարցնէ կը.- Ա՜յ հօղածի'ն, ի՞նչ գո'ւզես:

Մարթը շվարած կ'ըսէ կը.- Աղա', խեղճ եմ, մեղք եմ, էկեր եմ մէ քիչ փատ տանեմ, աբուր էփեմ:

Արապը մեղքնա կը մարթուն վրա, կըսէ.- Ես քեզի ան-պես մէ բանըմ տամ օր թօռեց թօռ ուտես, չի' պարպի: Տա'ր աս սինիին եփօր ըսես. «Բ'ացվէ սեղան, բ'ացվէ», ի՞նչ տե-սակ կերակուր ուզես պատրաստ գըլլի կը:

Մարթը ուրախությամբ սինին կառնէ տուն գուքա: Տու-նը հասնելուն պես, սեղանը բ'երէ կը կըսէ.- Բ'ա'ցվէ սեղան, բ'ացվէ:

Անմիջապես սեղանին վրա ամեն տեսակ կերակուր ու խմելիք հազըր գըլլի կը:

Մէ վախտ կանցնի, մարթ ու կնիգ մտածէն կը, թէ. «Փա-շային տուն կանչենք»: Մարթ ղրկէն կը, փաշային տուն կը

կանչեն, սինին դ'նեն կը, կըսե մարքը. «Բ'ացվե, սեղանս, բ'ացվե», ամեն տեսակ կերակուրներ պատրաստ գըլլին: Փաշան փորը կուշտըմ կը կշտցնե: Շնորհակալություն կը հայտնե ու դուս կելնե:

Փաշան նախանձելով խեղճ մարթու աղ սինիին վրա, գուզե ծեռնէն խլել: Մարթ ղրկե կը սինին գուզե: Խեղճ մարթը առանց գ'իտնալու փաշայի միտքը, սինին կուտա կը, տանին: Յ'էքսի օրը փաշան մե ուրիշ սինիմ ղրկե կը անոր սինիին տեղը:

Իրիկուն հացի նստած վախտը, մարքը կըսե.- Բ'ացվե', սեղանս, բ'ացվե,- ամմա շատ կը զարմանա օր կերակուր բ'ան հազր չկա, կը հասկնա փաշայի սատանությունը և բանըմ չի կրնա էնե:

Կանցնի մե վախտըմ, կենա կ'աղքտնան, կենա կնիգը էրգան կըսե կը.- Մա'րթ, քնա' մի քիչ փատ բ'եր աբուրմ էփենք ուտենք:

Մարթը կացին կառնե' կէրթա անտառը, կը հանդիպի կենա ան քյութուկին, մեկ քանի հատ կացնով զարնե կը, Արապը դուրս կելնե, կ'ըսե.- Ա՜յ անկր'ուշտ մարթ, կենա ի՞նչ գուզես:

Մարթը վախնալով կ'ըսե կը.- Աղա', սինին փաշան ծեռքես առավ, կենա մնացինք խեղճ, անտեր: Խեղճ եմ, մեղք եմ, մե քիչըմ փատ տանիմ:

Արապը կատղած, կը վերցնե մարթուն էշըմ կուտա կը,

կըսե.- Եփօր ըսես «չիու զըռ», ետնեն օսկի կը թափի:

Մարթը կուրախնա կը, հեծնի կը իշուն վրա, գուքա կը տուն: Տունը հասնելուն պես կըսե.- չիու, զըռ,- օսկիները կը թափին կը:

Մե օրըմ, մարթ ու կնիգ, խելք խելքի կուտան, հեծնին կը էշը, կէրթան կը բ'աղնիք: Չանվելու վախտը, համամճիին թենպեհ կընեն կը օր չ'ըլլի թե իշուն «չիո՞ւ, զը՞ռ» ըսե, վերջը օսկիները կը թափի: Չամամճին ծ'են չի հանե, եփօր անօնք նես կէրթան, համամճին իշուն «չիու, զըռ» կըսե: Էշը օսկիները կը թափե: Չամամճին եփօր աս բ'անը տեսնի կը, խելքը թռցնե կը: Խաբար կենե կը, մե հ'ուրիշ էշ բ'երել կուտա և մյուս էշը իրենց տունը ճամբել կուտա կը:

Լօղանալէն վերջը, փարա տալու վախտը, մարթը իշուն ինչքան օր «չիու զըռ» կէնե, էշը օսկի չի թափե. էրիգ կնիգ էշը կուտան իրենց լօղանալու տեղը, կելնեն գուքան կը: Կանցնի մե վախտըմ, կենա կաղքտնան:

Կինը կըսե մարթուն.- Ք'նա' ցախ բեր, աբուր էփենք:

Մարթը կելնի կէրթա կենա էն քյութուկին ռաստ գուքա, վախնալօվ էրկու իրեք կացին կը զարնե, էն Արապը դուրս գուքա, կ'ըսե.- Ա՜յ հօղածին, դ'ուն ի՞նչ անկուշտ մարթ ես:- Եվ քիչ մնա կը օր մարթուն ուտե:

Խեղճը կաղաչե կը, պաղատե կը, Արապին հերսը գիջնի կը: Աս անգամին ալ մե հատ երկանք կուտա կը, կըսե. «Օսկի կաղա»:

Մարթը ուրախ դառնա կը տուն: Քարերը սարքե կը, կա-
դա, օսկի կը թափի:

Մարթը կը զենկիննա, դ'րկիցները գ'իմանան, գուքան կը խափեն, կըսեն.- Մեմ ծ'եր երկանքը տվեք, տանինք քիչըմ բ'լղուր աղանք ու բ'երենք:

Կը տանին, տեղը ուրիշ էնղերիե քարեր կը բ'երեն: Խեղ-
ճերը շատ կը դ'արցնեն, ալ օսկի չի թափի:

Կենա կաղքտնան կը, վախտըմ կանցնի, կնիգը կենա կըսե.- Պիտի էրթաս փատ բ'երելու:

Մարթը աս անգամ ճարը հատած կելնե կ'էրթա քյուքու-
կին քօվը, մե կացին կը զարնե, Արապը դուս կ'ելնե կը, կըսե.- Ա՜յ անկուշտ հողածին, աղքան բանը քեզի տվի չկշտացա՞ր, կենե՞ էկեր բ'ան գուզես:

Խեղճը կ'ըսե.- Ունեցած չունեցածս ուրիշները բիթտուն տարան, խեղճ եմ, եկա կտորմ փատ տանիմ:

Արապը, ճարը կտրած, ըսավ.- Աս անգամ ա ասի կօպա-
լը տար, եփօր ըսես. «Կօպալ, ել ու հ'իչի», օսկի կը թափի:

Մարթը աս անգամ ա ուրախցավ: Կառնէ կը կօպալը, գուքա տուն: Եփօր կըսե. «Կօպալ, ել ու հ'իչի», կօպալը կել-
նե ու կիչնի իրեն գլխուն, լավըմ ծեծե կը:

Մարթը, խրատված, կառնե կօպալը, կէրթա փաշային տունը ու կըսե.- Փաշա, չըլլի ըսես կօպալ ել ու հ'իչի, սորա օսկիները թափին կը:

Փաշան, կարծելով թե սինիին պես է, բիրտեն բիրե

կըսե.- Կօպալ ել ու հ'իչի:- Կօպալը կելնե կը, կ'իչնի կը էն-քան զարնե կը փաշին գ'լխին, օր փաշան կըսե.- Ա՜յ, սինիի տերն է էկե, տվեք թօղ տանի:

Մարթը կ'առնե սինին, քեֆով կը վազե բ'աղնեպանին քօվ: Բ'աղնեպանին կ'ըսե.- Չ'ըլլի թե ասօր ըսես կօպա'լ, ել ու հ'իչի, սօրա օսկիները կը թափի:

Համամճին գիտնա կը թը, ադ ալ իշու պես է, կըսե.- Կօ-պա'լ, ե'լ ու հ'իչի,- էնքան կը զարնե օր համամճին կըսե.- Յամա՜ն, իշուն տերն է էկե, տվեք թօղ տանի էշը:

Երկանք տանօղ դ'րացիին տունը կէրթա, անկից ալ եր-կանքը կ'առնե և ուրախ ուրախ տուն գուքա:

Կուտեն կը, խմեն կը, քեֆ կէնեն կը:

Երկնքեն իրեք խնձօր հ'իչավ. մեկն ասօղին, մեկը՝ լսօ-ղին, մեկն ալ բօլօր աշխարհին:

Տպագրվում է «Հայ ժողովրդական հեքիաթների» 4-րդ հատորից (Երևան, 1963, էջ 484-486), ըստ Հակոբ Մկրտչյանի գիտական տառադարձության: Գրառման ձեռագիրը պահպանվում է ՀՀ ԳԱԱ Հնագիտության և ազգագրության ինստիտուտի Բանահյուսական արխիվում (Երվանդ Լալայանի ֆոնդ, գոր I, N 897): Ձեռագրի վրա դրված է «Երվանդ Լալայանի խմբարշավ» կնիքը: Գրված է. «Էրզրումի բարբառով, հավաքեց Բարսեղյան 1915 թ. դեկտ. 8, Երևան»:

## ԷՐԶՐՈՒՄՈՒՄ ՄԱՐԴ ՉԵՂԱՎ,ՍՏԱՄԲՈԼՈՒՄ ԱՂԱ ԷՂԱՎ

Էրզրումում ապրում էր մի ընտանիք, որը բաղկացած էր երեք անձնավորությունից, հորից, մորից և մի տղայից:

Որդին մի շատ վատ, շառլատան, անընդունակ տղա էր, իսկ հայրն էլ մի անպետք խարազ:

Հայրը մեռնելուց հետո թողնում է միմիայն մի կով, ուրիշ ոչինչ:

Է՜հ, խեղճ մայրն ի՞նչ անի, ինչո՞վ կառավարվի, որդին բեդելվաթ, ոչ մի գործի, բանի չի կպչի, խեղճը ստիպված կըսկսե կովի կաթը ծախել և այդպիսով ապրուստ հայթայթել ու ամեն օր տղին կը նախատե թե. «Գոնե հորդ սանիաթը արա, մի կտոր չոր հացի փող էլ է վաստկես»: Բայց որդին հեչ, որտեղ լուսացնում, էնտեղ էլ մթնացնում է ու իրա օրերը անցնում է պարապությամբ:

Օրվա մեկն էլ սրա ընկերները բըզեզն են մտնում թե. «Մենք պիտի էրթանք Ստամբոլ, չե՞ս գա իրար հետ էրթանք, այնտեղ մեր գործը լավ անց է»:

Սա էլ, խելքին կը զոռե գուքա տուն ու մորը կըսե.- Է՜, մարս, գիտես ի՞նչ:

- Ի՞նչ,- կը պատասխանե մայրը:

- Ել վեր, հազրվե, որ մենք յարաններով պիտի էրթանք Ստամբոլ, այնտեղ մեր գործը շատ անց է: Ել, դուն էլ հազըր եղիր, կովը հետվիս առնենք, էրթանք իսի մունտառ տեղեն,

բալքի այնտեղ մարդ դառնանք, այստեղ, այսպիսությունով մարդ չենք ըլլի:

Մայրը կըսէ.- Ի՞նչ կըսես օղուլ, ի՞նչ հազըր, ի՞նչ բան, ինչով պիտի էրթանք, ունինք, չունինք զաթի մէ կովմ ունինք. ան ալ տանինք ճամբան սատկեցնենք, ետև ի՞նչ էնենք, մանավանդ որ հորդ յաթիքյարն է, կովին կաշեմ կարոտս կառնեմ:

Տղան կըսէ որ.- Չէ', այդպիսի բաներ չկա մեր աշխարհումը, արդեն վճռել պրծել ենք, ե'լ, թե չէ անոնք կէրթան, մենք կը մնանք:

Է՜հ, մայրն էլ ի՞նչ անի, ճարահատված գելնե, շալը կառնե, տղան ալ կովի չվանը բուկը կը ցկե, առաջ կը խառնեն հո՜, հո՜, կէրթան կը հասնին ընկերներուն, ու կը շարունակեն միասին ճանապարհները: Կովը կանանչ խոտը արծելով կէրթա, մայր ու տղա էլ բունբունալով-դունդունալով կէրթան ու կը հասնին ի մայրաքաղաքն Ստամբոլ:

Ընկերները կըհեռանան, այս տղան էլ կովի ու մոր հետ միասին կը գնան մի գետնափոր տուն կը բռնեն, մորն ու կովին կը տեղավորցնե, իսկ ինքը կէրթա, ո՞ւր, միայն տերը գիտե:

Մուքը գընգնի, գուքա տուն:

- Է՜, մայրս, բանըմ կա՞ ուտելու:

Մայրն ալ կըսէ.- Ինչ որ աստված տվել է:

Կուտեն ու կը քնին:

Այդպես մի քանի օր, մի երկու շաբաթ կանցնի, որդին պետքը չի սեպե, թե գործ աշե, բանի աշե:

Մայրը կըսե.- Որդի'ս, ախր ասպես բան չի ըլլի, բերիր աստեղ ինձի ցկիր, թե լավ գործ կա, ո՞ւր է հըբը ոչինչ չես անե:

Տղան կըսե որ.- Մարս, քյարաստա է պե՜տք, քյարաստա՜:

Մի օր էլ կըսե.- Մարս, բեր իդի կովը ծախե'նք, փարին քյարաստա առնեմ, գործ անեմ, թե չէ այսպիսով բան չի ըլլի:

Մարը մի քիչ կը ընդդիմանա, հըմը որդին բանի տեղ չի դնե: Կովը կը բերե, չվանը բուկը կը ցկե ու առաջ կը խառնե:

Սիրտն ելած մայրը ճար ու ճուր կանե, այսքանը կըսե թե.

- Օղո'լ, տանելուն կը տանիս, տես չխաբվիս, այդ մեյդան այնպիսի մարդիկ կան, որ շատ կը խաբեն:

- Ֆառա կաց, մարս, ադոր համար դարդ մի էնե, ինձի չեն կրնա խաբե: Աստված դու առաջնորդե,- կըսե ու ճամբա կը ընկնի դեպի մեյդանը, կը հասնի խափանը ու կը կայնի:

Դրա դեմն էլ կա շինված մի շատ լավ, հոյակապ տուն: Հենց այդտեղ էլ բնակվում են այդ խաբեբաները:

Աղան կը տեսնի, որ մի խամ մարդ մի լավ կով ձեռքը կանգնած է, կը կանչե ծառաներից մեկին (բալկոնից ցույց տալով).

- Տեսնո՞ւմ ես, կովը ձեռքը մոլորվել կայնել է, գնա', շո'ւտ խաբի'ր, ձեռքիցը ա'ռ, բե'ր:

Այս ծառան էլ հավար, հավար գուքա, կը մոտենա ու

կըսե.

- Բարի աչողում:

- Աստծու բարին:

- Ծախու է, հա՞, ի՞նչ տամ իսի ղառղիդ: (Մանչը կը զարմանա):

- Ի՞նչ ղառղա, ի՞նչ կըսես:

- Չըբը ինչ, ղառղիդ ի՞նչ տամ:

- Տո ո՞ւր է ղառղա, իմ ծախածըս կո՛վ է, կո՛վ, լավ, եղոտ կով:

- Դե լա՛վ, գինը ըսե, ի՞նչ տամ ղառղիդ:

Խեղճ մանչուն հերսը գելնե, կըսե կոր.- Գնա', ես ծախու ղառղա չունեմ:

Ծառան քոռ փոշման, կէրթա, կըսե օր.- Աղա', չը կրցա խաբել:

Սրա բարկությունը գուքա, կը կանչե ամենագլխավոր խաբողին ու էլի ցույց տալով կըսե.

- Գնա', խաբիր, բեր, լավ ղավուրմացու է, անենք և ուտենք:

Մյուսը և նրա պես կը գնա կըսե.

- Բարի աչողում:

- Աստծու բարին:

- Ադ ի՞նչ է ծախածդ, սառչա՞ է, ի՞նչ տամ, գինը ի՞նչ է:

Տղան կը զարհուրի ու կըսե ինքն իրան. «Այս ինչ տարօրինակ մարդիկ գուքան, մե կարգով մուշտարիմ չի գա, որ հոգիս խայլառ էնեմ»:

- Իմ ծախածըս կո՞վ է կո՞վ, սառչան ի՞նչ է, բանն ի՞նչ է, կուզես առնել ըսե՝ կովիդ գինը ի՞նչ է:

Էլի ծառան կըսե.- Տո խելառ ես, ինչ ես, մեկ նայիր, դա կո՞վ է, սառչա է: Լավ, գինը ասա տանեմ, թող գյումանով կով ըլլի:

Տղան կըսե որ.- Ես քեզի պեսներին ոչ մալ կուտամ և ոչ ալ գին կասեմ, հայդե, գնա քու ճամփան:

Սա էլ դատարկ կէրթա և միևնույն բանը կասե որ.- Չկարողացա, պինդ բան է շատ:

Աղայի հերսը շատ գելլե ու կըսե.- Բերեք մուշտակս, տեսեք ես հիմի ի՞նչպես կը բերեմ:

Յագնի կապե կը՝ գա մեյդան.

- Տղա՛, այս ինչ լավ պլտրչին է, ծախո՞ւ է:

- Այո, աղա:

- Է, գինը ի՞նչ է:

- Է,- կըսե,- քեզի պես աղային հետ բազար անելը որն է, դու չիտե՞ս ինչ է որ:

- Գիտեմ, համա դու էլ ասա,- կըսե, ու կը շարունակե,- պըլտըրչին տուր տանեմ, գնա դու գինը իմացիր, ով որ ինչ արժեցնե, ես նրանից հինգ ղուրուշ էլ ավել տամ, տունըս էլ

այդ լավ տունն է:

Տղան կը գնա հարց ու փործ կանե, գիմանա որ խափված է. «լավ» կըսե ու կէրթա փողերն ստանալու: Ծառաներուն կասե, որ գնան փողերը բերեն: 7-8 դուրուշ կառնե, կը գնա էն դռանը մոտը կը կանգնի, որտեղ կովին հավարհավար մորթում են: Ծառաները կասեն.- էլ ինչի՞ ես կանգնել, գնա' էլի:

Մանչը կըսե.- Չարս որ մեռավ, օհաթ արավ թե. «Ինչ կենեք էրեք, կովն որ կը ծախեք պոչը չը ծախեք», հիմի կաղաչեմ որ պոչը տաք, ձեզի որ պետք չէ:

Դրանք էլ կուտան, ասիկ կառնե ու յալլա դամուրչընոցը, լա՜վ, սըխ մխել կուտա, մեջքը կը կապե, կէրթա տուն, մորը կըսե.

- Քա, մարս, տեսար, կըսես թե «խաբվիս կը», այնպես մե աղայիմ ծախեցի, որ այսքանը բեյ տվեց, ըսավ օր՝ «մյուսն ալ ետև կուտամ», հըմը մարս ինչ գըլլի իսի մեր դրկիցներեն էվատի մե ղաթըմ հալավ դայրա գտի:

Մարը կըսե.- Օղուլ ի՞նչ պիտի էնես, կենա ինչ սատանան առաջդ պայրաղ է բացել ուրմիշ ես եկե:

- Օ՜, չէ, չի ըլլի, իլլաքի պիտի գտնիս:

Մայրը կէրթա մե ղաթըմ դայրա կը բերե, մանչը ղոլթուղը կը զարնե, կէրթա պառիկմախեռի մոտ ու կըսե.

- Ինձի մե լավ, 16-17 տարեկան աղջիկըմ շինե, ահան ալ շորերս, հագու:

Պառիկմախեռը կասե թե.- Մի ոսկի է:

- Թող լինի, կտամ (մի ոսկին էլ արժե 8-9 ռ.):

Կը շինե, կը հագցնե, ուղիղ մի սիրուն, շատ սիրուն աղջիկ:

Սա սպիտակ չալման ոտքից գլուխ կառնե, կէրթա այն աղայի պատշգամբի տակ կը կանգնի: Ծառաները կը նկատեն սրան, կըգան կը մոտենան ու կը հարցնեն, ի՞նչ է ուզում: Նա էլ կը պատասխանե թե.

- Ձեր աղային հարցրեք թե աղջիկ պարոն սիրել չի՞ կամենում:

Սրանք կը նայեն երեսին, հրեշտակի նման մի սիրուն աղջիկ, կը գնան աղայի մոտ ու հարց կառաջարկեն թե.

- Աղա, մի աղջիկ պարոն է եկել, ասում է թե. «Ձեր աղան աղջիկ պարոն չի՞ սիրում»:

Աղան հարցնում է.- Սիրո՞ւն է:

Ծառաները պատասխանում են.

- Շա՜տ սիրուն է, նայել անգամ չէ կարելի, սիրունությունից մարդ կամաչե:

Աղան իսկույն կը հրամայե.- Հրավիրեցեք:

Ծառաները կը գնան և ներս կը բերեն. սրանք մեկս մեկու կը ողջունեն հետո աղան կասե.

- Աղջիկ պարոն, ինչո՞ւ մի քիչ վաղ չէկար, այսօր մենք ղավուրմա էինք եփել և շատ լավը, վաղը գայիր բոզբաշը միասին ուտեինք: Բայց որ դա անցել է, կը հրամայե՞ք ձեզ

համար դավուրմա բերել տամ մի քիչ ուտեք:

Աղջիկ պարոնն էլ կամք կտա: Աղան կը հրամայե ծառաներին, որ բերեն սեղան պատրաստեն: Իսկ աղջիկ պարոնը իր մտքումը կասե թե. «Գոնե չեղավ, չեղավ, մի անգամ էլե իմ կովիս միսը ուտենք»:

Սեղանը պատրաստելուց զանազան ուտելեղեններով, ծառաները կը հեռանան, իսկ սրանք կը նստին կուտեն, կը խմեն լավ, ուզածի պես, բավական ժամանակ էլ կանցնի, աղջիկ պարոնը կը հարցնե թե.- Ձեր քնելու ժամանակը ե՞րբ է:

Աղան էլ պատասխանում է թե.- Ուզում ե՞ք հիմա էլ կարելի է քնել:

Ծառաներին կը հրամայե անկողին պատրաստել: Նրանք էլ, ինչ որ աղան լավ և խաս բաներ ունի առաջ կը բերեն, կը պատրաստեն ու հետո կասեն թե. «էլ ինչ կը հրամայեք»: Աղջիկ պարոնը կասե, որ «ոչինչ» ու աղային կը հարցնի թե»- Չէ՞ր կարելի այս գիշեր ծառաներին մի կողմ հեռացնել:

Աղան կը կանչե քառասուն ծառային ամեն մինին մի մի ոսկի կտա և կասե.- Գնացեք, այս գիշեր դուք էլ քեֆ արեք, բայց որ լույսը կը բացվի արիք:

Սրանք ոսկիները կառնեն ու կնտըլ-մնտըլ սանդուղքներից իջնելով կէրթան: Դռները կփակեն ու իրանք էլ պառկելու կը պատրաստվին:

Աղջիկ պարոնը կասե որ.- Մեզանում սովորություն է, որ առաջ տղամարդը կը պառկի, հետո կինը:

Աղան կը պառկի, իսկ աղջիկ պարոնը ծխախոտը ծխե-լով ման գուքա և կը հետազոտե սենյակները, թե ինչ աչքի ընկնող բաներ կան: Բայց աղան համբերությունից դուրս էկած ասում է.

- Աղջիկ պարոն, դե արի':

- Լավ, գուքամ,- կըսե, ու (գիտեք ինչ, էն մըխած պոչը էլի իր մեջքում պահած ունի) էլի ծխելով ման գուքա:

Երկրորդ անգամ աղան կըսե.- Դե արի':

- Լավ,- կըսե, ու պոչը մեջքից հանելու թատառուկ կանե:

Մեկ էլ որ կասե, սա պոչից բռնած ցույց կտա գլխա-վերևից ու կը հարցնե.

- Աղա՜, իսիկ ի՞նչ է:

Աղան ասում է.- Չգիտեմ, պոչ է, ինչ է:

- Աղա', իսիկ ի՞նչ է:- Էլի,- աղա, իսիկ ի՞նչ է (վերջինը ավե-լի բարձր ձայնով):

Հետո իրան զարնելով աղային. «Ղառղա է, թե սառչա է, թե պլտրչին է, թե ղառղա է, թե սառչա է, թե պլտրչին է, թե (կըսե ու կուտա չփլաղ աղային) ղառղա՜ է, թե սառչա է, թե' պլտրչին է», այնքան կը զարնե որ մարդը արյունլվա, փրփրած, ուշաթափ վայր կը ընկնի:

Աղջիկ պարոնը վերմակը քցելով վրան, ինչքան որ աչ-

քի ընկած բաներ կան և արկղիկով ոսկին կը հավաքե ու կէր-
թա, շորերը կը փոխե, իր շորերը կը հագնի, և դեպի տուն կուղղե յուր քայլերը և մորը կըսե.

- Մարս, ահա քեզ ոսկի և այսքան արծաթեղեններն էլ ընծա, կովն առնող աղան տվեց, տեսա՞ր ինչ լավ մարդու եմ ծախել, որ ինքը իրան խղճովը կը վարձատրե և ասավ որ՝ աստված շհատ լինի էլի կուտամ:

Սրան թողնենք իրա տունը, գնանք աղայի մոտ:

Լուսաբացին ծառաները գուքան: Մի երկու ժամ սպա-
սելուց կը տեսնին, որ ոչ ձայն կա և ոչ ծպտուն, իրանք իրանց կասեն. «Մեր աղան այսքան երկար քնողը չէր, չը լի-
նի մի վտանգ պատահած լինի»: Մի քիչ էլ կըսպասեն, և ոչ մի ձայն:

Ծառաներից մեկը կըսե.- Ես կը գնամ և կը նայեմ:

Երբ ներս կը մտնի և կը տեսնի աղայի անկողինը գզված և արյունլվա, կը հավաքե մյուսներին, որ իմանան բանի էությունը: Բոլորը կը հավաքվին կը գան, վերմակը հետ կը տանին և ի՜նչ, աղան փրփրած, արյունլվա ընկած է, հա-
մարյա անշնչացած: Մեկը ցած ձայնով ձայն կտա. «Աղա' (մի քիչ բարձր) աղա՜ (էլի բարձր), աղա՜:

Աղան էլ, մի հառաչ արձակելով՝ «Ը՜-ը՜-ը»:

- Տո տղերք, աղան դեռ կենդանի է, ջո'ւր, ջո'ւր հասցրեք:

Ջուրը կը բերեն աղայի երեսին կը սրըսկեն, աղան ուշքի գուքա և կասե տնքալով.

- Ա՜խ, տղայք, գրող ուտեինք, մահ ուտեինք, այդ կովը չուտեինք, գրող ուտեինք, մահ ուտեինք, այդ կովը չուտեինք (երեք անգամ կը կըրկնե):

Ծառաները բանի էությունը հասկանալով ասում են. «Դ-ը-ըմ, աղջիկ պարոնը կովի տե՞րն է եղել»:

Սրանք էստեղ մնան, մենք գնանք էն տղայի մոտ:

Էն տղան էլ երկրորդ օրը կը գա աղայի պատշգամբի տակ և ականջ կանե, թե, աղան մեռավ թե կենդանի է և ինչ է պահանջում, կամ ուզում: Լսում է, որ աղան ասում է.

- Ինձ համար Ինկիլիզից մի հեքիմըմ բերեք տվեք, այս-տեղիները չեմ ուզում:

Եվ ինչու համար, նրա համար որ այնքան խաբեբա է, որ ամբողջ քաղաքը խաբելով վառել է, վախենում է, թե այդ-տեղի բժիշկները կը թունավորեն իրան, ուստի կը պահա-նջե որ Ինկիլիզից բերել տան:

Էս տղան իմանալուն պես կը վազե պառիկմախեռի մոտ, ոսկին կը տա և կասե.

- Ինձ մի ինկիլիզ շինե:

Մի ցիլինտըռ էլ նորը բերել կտա, շորերը և իր ուզածի պես երիտասարդ, մի քանի պուզիրոկներ էլ կառնի, ծվի սպիտակուցը առանձին, դեղնուցը առանձին, ածխաջուր ու այդ տեսակ մի քանի բաներ դարսած մի կարզինի մեջ, անցնում էր փողոցներով ու բղավում.

- Ինկիլիզու եմ եկել, լավ, թագավորական լայեղ հեքիմ եմ:

Եվ երեք չորս անգամ անցնում էր հենց այն փողոցով, որտեղ էր աղայի բնակարանը: Այդ րոպեին տեսնում է դռան ծառաներից մեկը և տուն է վազում, աղային ասում.

- Աղա, մե հեքիմ է եկել ինկիլիզու, գուզես կանչեմ:

Աղան ասում է.- Կանչե, կանչե:

Ծառան իսկույն գուքա կը կանչե:

Սա էլ կը գա, վերև բարձրանալով աղայի մոտը կը քննե ցավերը ու կասե.

- Աղա, այս ինչ բան է, ասեմ ծեծել են, քեզ պես մարդուն ո՞վ պիտի վստահի ծեծելու, բայց քո վերքերը երևում են, որ ծեծված է, այն էլ մեխերով, վերքերը մեխի տեղեր են:

- Աղան կը զարմանա, թե այս ինչ լավ բժիշկ է, որ իսկույն հասկացավ բանի էությունը և կառաջարկե իր վարձատրությունն ու կըսե.

- Այժմ ի՞նչ է հարկավոր ինձ:

Նա էլ կը պատվիրե.- Բաղանիք:

Ծառան իսկույն գնում է և պատվիրում, որ ոչ ոքի ներս չը թողնեն, որ յուր աղան է գալու և լավ պատրաստեն:

Կը գա, աղային էլ կըսե որ.- Արդեն պատրաստ է:

Աղան կըսե ծառաներին, որ.- Դուք էլ բոլորդ արիք գնանք, բոլորն էլ ուրախանում են և հավաքվում գնալու:

Բայց պ. բժիշկը ասում է, որ.- Ես այդ տեսակ հագնված մարդկանց հետ տեղ չեմ գնում:

Եվ աղան կը հրամայե, որ ինչ խաս ու ղումաշ շորեր ունեն նրանք հագնին և ոտներն էլ արծաթյա քոշերը:

Ամենքի պատրաստվելուց հետո երկու ծառան ընկնում են աղայի ղոլթուղներից և ուղևորվում են բաղանիք: Երբ հասնում են, ծառաները աղային հանվեցնում ու տանում են ներս, իրանք էլ սկսում են հանվելը: Այն ժամանակ բժիշկը ասում է.

- Գիտե՞ք ինչ, ես աղայի շահ տամարից պիտի արյուն առնեմ: Երբ սկսեմ, նա կը ճվճըվա. «Յամա՜ն հասե՜ք, օգնեցե՜ք», չլինի թե այդ րոպեին ներս մտնիք, ես կը շշկլվեմ, սխալ կը կտրեմ և այն ժամանակ աղանի բանից կը պրծնի:

- Լավ,- կասեն, ու ամենքը կը հեռանան առանձին-առանձին լողանալու:

Հետո բժիշկն է ներս մտնում՝ փեշտամալի տակից մեջ-քը փաթաթած կովի պոչը, ծխախոտը ծխելով գյոբակի շուրջը կը պըտըտի, իսկ աղան հառաչելով ասում է.

- Հեքիմ աղա, վերքերս կսկծեց, չեմ դիմանա:

Իսկ բժիշկը ասում է.- Թող քըքրի դեռ վաղ է, ժամանակ կա.- ու պոչը մեջքից քիչ-քիչ դուրս կհանե, երբ երրորդ ան-գամ ասում է, թե. «Չեմ դիմանա», հեքիմը այդ րոպեին պոչը դուրս կը հանե ու գլխավերևը կը կանգնի.

- Աղա՜, իսիկ ի՞նչ է:

Երբ աղան պոչը կը տեսնի, հոգուն տունը կը մարի:

Հեքիմը էլի կը կրկնե.- Աղա՜, իսիկ ի՞նչ է,- և երկրորդ անգամ էլի ծեծելով մարմնին, կը մրմնջա,- ղառղա՛ է, թե սառչա է, թե պլտրչին է, ղառղա է, թե սառչա է, թե պլտրչին է, թե ղառղա է, թե սառչա է, թե պլտրչին է: Նա կը բղավե, կաղաչե, օգնություն կը խնդրե, բայց ոչ մի տեղից, սա իրա գործը գիտե, տուր թե կտաս: Երբ տեսավ, թե արդեն ուշաթափվել է, փրփրած վայր է ընկել, կը թողնե նրան այնտեղ այնպես և ինքը դուրս գալով, բոլոր շորերը, քոշերը կը հավաքե, դուռը դրսից կը փակե ու կը գնա: Տանելով, շորերը կը ծախե քոշերը բոլորը, փողերը կառնե, շորերը կը փոխե ու տուն կէրթա, մորը ասելով.- Ահա, մարս, կովը առնող աղան էլի այսքան փող տվեց, ու ասաց որ. «Աստված շհատ ըլլի, էլի կտամ»:

Դրան թողնենք իրա տունը, գանք մենք բաղանիք:

Ծառաները մի բոլ լողանալուց հետո կըսեն.- Աղայի ձայնը էլ չի գա, արիք գնանք տեսնինք ինչպես եղավ:- Կգան որ ինչ, աղան էլի այն դրության մեջ է, դեռ ավելի վատ, քան թե տունմն էր: Արյունը կը հեղա, ինքը փրփրած. մեկը մյուսին ասում է. «Մի գուցե այդ բժիշկը էլի կովի տերը լիներ»: Կը լսեն, ականջ կը դնեն, որ աղան մի փոքր կը հըծծա, ձայն կը տան ցած ձայնով. «Աղա՛, աղա՜ (մի քիչ բարձր ձայնով), աղա՜», աղան ձայն է հանում. «Ը-ը-ը՜» հառաչ արձակելով՝ «Տղերք, ջուր հասցրեք, աղան դեռ կենդանի է»: Էլի ջրովմրով ուշքի կը բերեն, աղան էլի տնքալով կըսե.

- Գրո՞ղ ունեի՞նք, մա՞հ ունեի՞նք, այդ կովը չունեինք:
Ա՜խ, գրո՞ղ ունեի՞նք, մա՞հ ունեի՞նք, այդ կովը չունեինք:

Ծառաները մեկ-մեկու երես են նայում և հասկանում էլի օյինբազությունը:

Վերջապես ծառաները դուրս գուքան, որ շորերը հագնին ու աղային տուն տանին, կնայեն որ՝ ոչ շոր կա, ոչ ոտնաման, այս ինչ բան է. ձայն կտան, կը բղավեն, ոչ ոք լսող չկա և ոչ էլ մարդ է երևան գալիս: Վերջապես շատ իրարանցումից համամչին գուքա, կը հարցնեն, նա էլ կը հայտնե, որ ինքը երբեք չէ եկել, ինչ որ իրանք եկել են ներս. «Ահա սա է իմ այստեղ գալը, ձեր գալուց հետո», ինչ անենք: Տուն կուղարկեն մեկիմ, որ շորեր բերի, հագնեն, տուն գնան: Շորերը կը հագնին, աղային կը հագցնեն և կը դնեն նասիլկի մեջ ու տուն կը տանին (որովհետև այն ժամանակ կառք չկար): Բաղանիքը, ասենք շատ թե քիչ օգնել էր, վերքերը կակղացել էր ու դեղերով, չնչին բաներով մի քիչ առողջացավ:

Մի ամիս ու կես, երկու ամիս անցնելուց հետո, էլի մեր տղայի միտքը փոխվեց թե. «Մեկ գնամ տեսնիմ աղաս ինչ է անում, մեռա՞վ թե կենդանի է»: Յուր շորերով էլի կը գնա պատշգամբի տակ ման կը գա և կը լսե, որ աղան ասում է. «Ինձ համար աչք անցուցեք, երբ կը տեսնիք քյարվանը, ինձ իմաց տվեք, որ պիտի գնամ հաճը, մի երկու տարի այնտեղ մնամ, թե չէ էն սատանան որտեղ որ է կը գա և մի օր

գլխիս մի վտանգ կը բերի, գնամ մի քանի ժամանակ հեռանամ, թե աստված տվեց էլի հետ եկա, լավ, թե չէ՝ ինչ որ կամեցել է»: Այս տղան որ այս բաները կիմանա, իսկույն կը վազե մեյդանը, 2 ուղտ կը գնե, ուղտապանի շորերը, նրա աշկերտը մի օրով կը վարձե, կը գնա փողոցից զանգերզլեր կառնե, ուղտերի վզից կը կախե ու փողոցով կանցկենա ու կը բղավե. «Մեծ քյարվան ունեմ 38 հատըս քրեհով եմ տվել երկուսըս է մնացել, ով որ կուզե թող գա հաճը կը տանեմ»: Ծառան կիմանա, այս, կը գնա աղային կասե, որ.- Հաճը գնացող կա, մեծ քյարվան,- ասում է,- ասում է, 38 հատըս քրեհով եմ տվել, մնացել է երկուսըս, ով որ կուզե, թող գա, տանիմ:

Աղան կը հրամայե կանչել, կը հարցնե թե.- Կը տա՞նիս, բան,- նա էլ կասե, որ.- Ինչու չէ, քեզ պես աղային էլ մարդ չը տանի: Բազար կանեն, փողը գլխանց կառնե ու աղան ալ ծառաներուն կը հրամայե երկու սընդուկ ոսկի լցնել և բառնալ ուղտի վրա, իսկ մյուս ուղտը պատրաստել իրան նստելու: Ուղտապանի աշկերտը այս ամենը կարգադրելուց հետո աղային էլ կը նստեցնե, հետո մեկը մի ուղտը, մյուսը մեկը զընգզընգալով աղային հաճը կտանեն քառասուն ծառաներն էլ ետևիցը: Երբ մի քիչ կհեռանան, կըսե.- Աղա, մեղք են ծառաներդ, արձակե թող գնան, ինչքան էլի պիտի բաժանվիք, ինչո՞ւ զուր տեղը չարչարվին:

Աղան կըսե.- Այո, լավ ասիր, թող գնան,- և հրաժեշտի ողջույն տալուց հետո ասում է.- Մեր արհեստը պինդ պահե-

ցեք, տանըս լավ նայեցեք: Եկա՝ եկա, չեկա՝ ինչքան որ կարողություն ունեմ հավասար բաժանեցեք ու շարունակ մնացեք իմ տան մեջ ու ինձ ողորմի տվեք:

Այս տղան, աղայի ծառաներին ճանապարհ գցելուց հետո, իրա վարձած ուղտապանի աշկերտին էլ կը ճամբե ու հանգիստ կը շարունակե ճանապարհը:

Մի քիչ գնալուց հետո աղան կը հարցնե.- Ո՞ւր է քո քարավանը:

Նա էլ ցույց կուտա հեռվից թե.- Տե՞ս, այնտեղից երևում է, մի քիչ էլ գնանք կհասնենք:

Էլի կը շարունակեն ճանապարհը, աղան կարծես զգում է իր գլխի գալիքը և հարցնում է.- Ո՞ւր են, չեն երևում:

- Ա՜յ, էն դունմանը որ կերևա, իմ քարավանն է, մի քիչ էլ, կը հասնենք: (Եվ գիտե՞ք, կովի պոչն էլի յուր մեջքում ունի պահած):

Կը գնան մի քիչ էլ, մի ժայռի կը հասնին, տղան չորս կողմը կը նայե, որ ոչ ոք չկա, ամայություն է տիրում այդտեղ, ուստի կանգ է առնում, պոչը մեջքիցը հանում, աղային դեմ անելով դարձյալ ասում է.- Աղա՜, իսիկ ի՞նչ է, մեկ նայիր, աղա, իսիկ ի՞նչ է:

Բայց երևակայեցեք աղայի դրությունը էդ րոպեին, լեղին կը պատռվի, արյունը կը ցամաքի, ի՞նչ անի այդ ամայի տեղում: Կը սկսե աղաչել, պաղատել, բայց ուշք դարձնողը ո՞վ է, մտքումը տղան կըսե. «Դուք շատ շատերին եք

վառել, ես էլ ձեզ պիտի վառեմ» ու էլի կըսե.- Աղա՜, իսիկ ի՞նչ է,- ու կը սկսե զարնելը. «Ղառղա՜ է, թե սառչա՜ է, թե պլտրչին է, ղառղա՜ է, թե սառչա՜ է, թե պլտրչին է, ղառղա է, թե սառչա է, թե պլտրչին է» ու կուտա ջանին. այնքան որ հոգին ավանդած աղան ուղտի վրայից վայր կը ընկնի: Սա կը քաշե մի կողմ, մի բուռը հող կածե վրան, ինքը ոսկիքը, ուղտերը կառնե ու կէրթա քաղաքը: Գիշերով կը հասնի, յուր շորերը կը հագնի, զընգզընգալով սունդուկներով ոսկին տուն կը տանի ու մորը կըսե.- Մարս, արի ոսկիքը տուն տար, կովիս գինն է, այս էրկու ուղտն էլ հետը աղան ինձ ընծայեց, բայց ես ի՞նչ եմ անում ուղտը, ծախեմ, վաղը փող կանեմ:

Ու այդպես էլ արեց: Մի շքեղ տուն էլ վարձեցին, մոր հետ զուգվեցան ու սկսեցին կարգին ապրուստը:

Էրզրումում մարդ չէղավ, Ստամբոլում աղա էղավ:

Տպագրվում է «Հայ ժողովրդական հեքիաթներ»-ի 4-րդ հատորից (Երևան, 1963, էջ 465-475): Գրառման ձեռագիրը պահպանվում է ՀՀ ԳԱԱ Հնագիտության և ազգագրության ինստիտուտի Բանահյուսական արխիվում (Երվանդ Լալայանի ֆոնդ, գործ I, N 898): Ձեռագրի վրա դրված է «Երվանդ Լալայանի խմբարշավ» կնիքը: Վերնագիր չունի: Ձեռագրի առաջին էջում վերնագրի փոխարեն գրված է «Հեքիաթ», այնուհետև նույն էջում հեքիաթի կողքին գրված է. «Էրզրումի բարբառով»: Գրառման հանգամանքների՝ ասացողի, գրի առնողի, ժամանակի և այլնի մասին տեղեկություններ չկան:

# ՕՐԹՄԱ

Մարդու մեկը գարնան գլուխ օրթմա է շինըմ:

Ժողովուրդը հարցնըմ է.

- Ա'յ մարդ, ի՞նչըղ էղավ, օր օրթմա շիքեցիր:

Էդիգ էլ, թե.

- Առաջը աշուն է գալըմ:

Աշուն օր գալըմ է, օրթման քանդըմ է:

Ժողովուրդը նորից է զարմանքով ըսըմ.

- Էդ ի՞նչըղ էղավ օր օրթման քանդեցիր:

Մարդը, թե.

- Առաջը գարուն է գալըմ:

*Օրթմա - նախամուտքի ծածկ՝ մուտքը անձրևից և ձյունից պաշտպանելու համար, նաև՝ չարդախ, պատշգամբ:*

*Ասացող՝ Գայանե Ախցխեցյան, ծնվ. 1908 թ. Փոկա գյուղում, ապրում է Թբիլիսիում:*

*Գրառող՝ Էլեոնորա Անթիձե, Թբիլիսի, N110-րդ դպրոց, 10-րդ դասարան:*

***Հրեղեն ձին***, մշակեց և վերապատմեց Սերգեյ Վարդանյանը, Ե., 1981, էջ 105:

## ՆՈՅ ՆԱՎԱՊԵՏՆ ՈՒ ՕՁԸ

Մե սաղ տարիմ թոն կէնե: Նոյ նավապետը սաղ կենդանիներուն լցնե կը պարախոտը ու կայնի կը: Սաղ երկիրը ջրով էր ծածկվե: Նոյ նավապետը պարախոտով պտտիկը, տեսնի կը օր ջուրը ամեն տեղ մեհավսար է: Մուկը պարախոտը ծակե կը: Նոյ նավապետը շատ տխրի կը, հնարմ չի գտնի, օր ծակը փակե: Օձը քուքա, կսե.

- Ինձի իննի արնով կշտացու, ես էտ ծակը փակեմ կը:

Նոյ նավապետը կսե.

- Էլնենք չորը ես քեզի կշտացնեմ կը, հիմի դու ծակը փակե:

Օձը ծալլըլվավ նստավ, պոչը կոխեց ծակը, փակեց: Սաղ աշխարհը պտտան, ջուրը մեհավսար առել էր, հիմի ու՞ր տի էրթան, օր չոր գտնին: Գնացին էլան Սիս:

- Սի'ս, կառնե՞ս զիս:

- Ո'չ,- ըսավ Սիս,- Մասիսը բարձր է ինձանից:

(Սիսու ճիտը ծուռ է, էտտեղ գլոխ է իջուցե): Էլան Մասիսու գլոխը, քիչըմ էլի չոր էր: Վեց ամիս էտտեղ կեցան, տորի ջրերը քաշվան, աշխարհի շատ տեղը ջուր մնաց, քիչ տեղը՝ չոր: Ժողովրդին էտտեղ բաց թողեց:

- Քնացե'ք, հրճվեցե'ք, աշխարհ կազմեցե'ք,- ըսավ Նոյ նավապետը:

Օձը էկավ, ըսավ.

- Ինձի ինսնի արնով կշտացու:

Նոյ նավապետը վետռամ նըվք փերեց, լցեց վրան, վառեց ու ըսավ.

- Քամի', ուժեղ փչե, օսկոռը լու ըլի, միսը՝ օչիլ, տարածվի կենդանիներուն վրան, ես խոր իշկա՞ն արուն տամ, որ կշտանա:

Օձը տառցավ լու ու օչիլ, տարածվավ կենդանիներուն վրա ու սկսեց ծծել էնոնց արունը:



*Ինսնի - մարդու*

*Ձիտր - վիզը*

*Վետռամ - մեկ դույլ*

*Թոն - անձրև*

*Նըվք - նավթ*

*Տորի - մինչև*

*Օսկոռը - ոսկորը*

*Օչիլ - ոջիլ*

*Խոռ - սրան*

*Մեհավսար - միահավասար*

*Պարախտ - շոգենավ*

*Իշկան - ինչքան*

*Ասացող՝ Շուշանիկ Մուրադյան, ծնվ. 1906 թ. Ախալքալաքի Բուռնաշեթ*

*գյուղում, մանում հասակում լսել է հորից՝ Բարդուղիմեոսից:*

*Գրառող՝ թոռը, Շուշանիկ Մուրադյան, Ախալքալաքի շրջ., Բուռնաշեթի դպրոց, 9-րդ դասարան:*

***Թագավորի երազները (Բանահյուսական ժողովածու)***, կազմեց, ծանոթագրեց և հրատարակության պատրաստեց Սերգեյ Վարդանյանը, Ե., 2003, էջ 38:

# ՀԱՅՐ ԱԲՐԱՄԸ

Հին-հին վախտով մե մարդմ ու կնիկմ կլլին: Մարդուն անունը՝ Աբրամ, կնկան անունը՝ Սառա: Էդ ժամանակ մարդիկ չիտեին, թե ի՞նչ է աստղը, ի՞նչ է երկինքը: Մե անգամըմ Աբրամը գիշերը տուս կէլլնե, վեր կաշե, պլպլան բաներ կտեսնի, զարմանա կը, կաշե երկինքը կապուտ կտորի պես փռած, բայց վար չի ընկնի: Շատ կմտածե, կէրթա մե էխտյար մարթում քով, պատմե կը տեսածը, կսե.

- Պապի', ես պլպլան բան տեսա, էտոնք ի՞նչ են:

- Բալա ջան, էտոնք աստղ են, կան յոթ աստղ, էտոնք յոթ ախբերնին են, կէրթան գործ ժուռ քալու, կան քառսունատ, էտիկ թագավորին քըրվընն է, կան կշեռքի ձևի, էտիկ Աստու կշեռքն է, էտ կշեռքով Աստված կշռե կը մարդոցը մեխկերը, ջոկե կը արդարն ու մեղավորը, երկնքեն օր աստղը կընկնի, մարդ կմեռնի:

Էստեղ Աբրամը կմտածե, օր Աստված կա, ու ինքը հավտա կը Աստուն: Էտտեղաց մարդիկ Աստուն չեն հավտա: Էտ նասին օր կիմանան, կերթան թագավորին կսեն, թագավորը Աբրամին տանի մե վերանա տեղըմ կթողնե: Աբրամն ու կնիկը մե չոլքանմ ա կունենան, մե քանիմ տարի կապրին: Հող նը ջուր կար, նը խոտ, նը ծառ: Չոլքանը ամեն օր օչխարը արծելու կտանիր: Մե օրմա տանի կը արծելու, տունը հաց քիչ կլլի: Սառան իրեք հաց կուտա, կսե.

- Էսքանով յոլա քնե, տորի հաց էփեմ, Աբրամը փերե:

Չոբանը հացը կառնե, կերթա: Արեգակն օր մե քիչմ վեր կելլե, Բագրատը (չոբանը) մե օչխարըմ կըկթե, մե հացմ կըբրթե, թնե կը վար, օր էտև ուտե, մեմա մե պզտի տղամ քուքա, կսե.

- Չոբան ախբեր, անոթի եմ, կաթմ կթե՝ խմեմ:

Չոբանը էտ բրթածնա էտոր կուտա: Էսիկ կուտե, կէրթա: Վերջին հացը կբրթե, օր ուտե տի, մեմա մե էխտյար մարդմ կելլե, կսե.

- Չոբան տղա, մե օչխարմ կթե՝ խմեմ:

Բագրատը մտածե կը, օր ուր է, ուր չէ, Աբրամը հաց կփե-րե, էդ բրթածնա էտ էխտյարին կուտա: Էխտյարը կուտե ու կսե.

- Որդի'ս, ես օր կամ, Քրիստոսն եմ, ինի երկու մարդնա ես էի,- էստեղ Քրիստոսը կօրհնե,- թող խոտը ծնկներեդ վեր ըլլի, թող ամեն տեղ կաթնաղբրներ բխբխան, հավքեր ճխճխան, թող օչխրնուտ մեջ իշկան օր հիվանդ ու վատ կան, թող լավնան ու թիվը մեկին էրկուս աճե:

Էդ ասելն էր ու ըշկեն կորիկը: Չոբանը մնա կը շշմած, ա-մեն տեղ կաթնաղբրներ կբխբխան, հավքեր կճխճխան, խոտը կծածկե ծնկները, օչխարները կշատընան: Չոբանը հլը չէր հավտա իրեն ըշքերուն, մեմա Աբրամը քուքա, Բագ-րատը պատմե կը ինչ օր գլխուն անցել էր: Աբրամը կո-րախանա, կէրթա կնկանը կսե.

- Սառա', մեր չոբանը տեսել էր Քրիստոսին, արի

մենքա ծում բռնենք 40 օր, մենքա տեսնինք:

Էսոնք ծում կբռնեն: Եռեսունինը օր էսոնք առավոտը կելլեն մալ, օչխար դուս կէնեն, խոնչան կբանան, իրենք նստին կը քովը ու թզբեյ կքաշեն: Վրա քառասունին առավոտը Աբրամը կէլլե դուս, մեմա տեսնիկը, օր մե էխտյար մարդմ դըզգինըկը ձեռքը, մորուքը ծնկներեն հետ, հավար-հավար քուքա: Էսիկ նես կմտնի, կնկանը կսե.

-Քրիստոսը էկավ:

Քրիստոսը քուքա, բարև կուտա, բարև կառնե, նստի կը: Աբրամը կէրթա օր հորթը մորթե, Քրիստոսը էնթուեն կսե.

- Աբրա'մ, հորթը մի մորթե, կովը կաթ չի տա:

Աբրամը անկած չի էնե, մորթե կը: Սառան կէրթա կովը կթելու, չի թողնե: Նորից Քրիստոսը կառնե հորթը խաչակնքե կը, հորթը կէլլե վազե կը մորը քով: Աբրամը կէրթա մե գառմ կմորթե, փերե պատիվ կէնե: Եփ օր հացը կուտեն, պրծնին կը, Քրիստոսը կսե.

- Քեզի մե տղամ կլլի:

Սառան էնթուեն խնդա կը.

- Իսի մարթը ի՞նչ կսե, ես իհծծուն տարեկան եմ, մարդս՝ վածծուն, մեզի ի՞նչ տղա տի ըլլի:

- Ինչի՞ կխնդաս, որդի',- կսե Քրիստոսը,- ձեզի տղամ կլլի, չկնքեք, ես քուքամ կնքեմ կը:

Ինքը կէրթա: Թմնի կը ինը ամիս, ինը օր, Սառան պառ-

կի, մե մանչմ կըփերե: Էս մանչը կլլի մե տարեկանըմ, Քրիստոսը քուքա կնքե կը: Քրիստոսը կսե.

- Ձեր տղան եփ օր կլլի օխտը տարեկան, տանիք կը Մար-ութա սարը, մատղեք կը:

Եփ օր թմմավ տղի օխտը տարին, Սառան ու Աբրամը առան մեծ պաշար, քնացին Մարութա սարը: Փատ ժողվեցին, կրակ վառեցին, ջուրը թրին կրակին օր մատաղ տի էնեն: Ջուրը էփավ, Աբրամը Սառային ղրկեց հեռու տեղե փատ ժողվելու, ինքը պառկեցուց տղին օր մատղե:

- Հայր Աբրա'մ, մատաղդ ունթունելի է,- հրեշտակը կբռնե ձեռքեն,- վեր աշե մատաղդ էկավ:

Աբրամը վեր կաշե, գառը օսկե ժնջիլներով վար քուքա: Հրեշտակը խաչակնքե կը տղին, տղան կելլե կերթա: Գառը կմատղեն, կուտեն, կխմեն, կէրթան տուն:

*Վերանա - ավերակ, անմարդաբնակ*

*Քառսունատ - քառասուն հատ*

*Քըրվընն է - քարավանն է*

*Մալ - ընտանի կենդանի*

*Դըզինըկը - դագանակը*

*Էտև ուտե - հետո ուտի*

*Էնթուեն - այնտեղից*

*Էխտյար - ծերունի*

*Ըշքեն - աչքից*

*Խոնչա - սեղան*

*Հող - այդտեղ*

*Հավար-հավար - շտապ-շտապ*

*Ծում բռնենք - ծոմ պահենք*

*Ունթունելի է - ընդունելի է*

*Ժուռ քալու - փնտրելու*

*Մատղել - մատաղ անել*

*Էրիկմարդ - տղամարդ*

*Մե օրմա - մի օր էլ*

*Թմմավ - լրացավ*

*Ասված - Աստված*

*Ասու - Աստծո*

*Նը - ոչ*



*Ասացող՝ Շուշանիկ Մուրադյան, ծնվ. 1906 թ. Ախալքալաքի Բուռնաշեթ գյուղում, մանում հասակում լսել է հորից՝ Բարդուղիմեոսից:*

*Գրառող՝ թոռը, Շուշանիկ Մուրադյան, Ախալքալաքի շրջ., Բուռնաշեթի դպրոց, 9-րդ դասարան:*

***Թագավորի երազները (Բանահյուսական ժողոված), (Բանահյուսական ժողովածու)***, կազմեց, ծանոթագրեց և հրատարակության պատրաստեց Սերգեյ Վարդանյանը, Ե., 2003, էջ 44-45:

# ՀԵՌԱՑԵՍ ՄԱՐԴԸ

Մի ախքատ մարդմ կլլի: Էս մարդը մե օրըմ ճամփեցեն ծիու նալըմ կգտնի, փերե կը տուն, կսե.

- Կնի՛կ, ծիու նալըմ գտա, իրեք նալըմ նա գտնիմ, ծիըմ առնեմ:

Կնիկը կսե.

- Մա՛րդ, ծին օր առնես, քուռիկ մա օր ունենանք, քուռիկը կուտա՞ս էրթամ հերանցս տուն:

Մարդուն հերսը կէլնե, կառնե չըպուխը, կընկնի կնկանը էտտին, լավմ թակե կը, կըսե.

- Հլը իսոր աշե, տանի խեղճ քուռիկին մեշկը տի ջարդե:

*Ճամփեցեն - ճանապարհից*

*Հերսը կէլնե - զայրանում է*

*Չըպուխ - ծխափող*

*Էտտին - ետևից*

*Իսոր - սրան*

*Աշե - նայիր*

*Ասացող՝ Շուշանիկ Մուրադյան, ծնվ. 1906 թ. Ախալքալաքի Բուռնաշեթ գյուղում:*

*Գրառող՝ թոռը, Շուշանիկ Մուրադյան, Ախալքալաք, Բուռնաշեթի գյուղի*

*դպրոց, 9-րդ դասարան:*

***Թագավորի երազները (Բանահյուսական ժողովածու)***, կազմեց, ծանոթագրեց և հրատարակության պատրաստեց Սերգեյ Վարդանյանը, Ե., 2003, էջ 88:

## ԱԳԱՅ ՏԵՐՏԵՐԸ

Մե քյասիբ մարդըմ գնաց մեշան կոճղ հանելու: Երբ օր հանեց երկրորդ կոճղը, տըկեն օսկի դուս էկավ: Քյասիբն օր օսկին տեսավ, շատ զարմացավ, մաթ մնաց, հըմը ուրախութենեն կարմրավ:

Ի՞նչըղ էնեմ, օր աս օսկին տուն տանիմ, ըսավ ինքը իրեն: Դուս էկավ ճամփուն քյանարը: Դեմեն մե տերտերըմ քուքար, օխտը ղաթըրա առաջը խառնած: Քյասիբը ըսավ. ‹‹Աղ լավ է, օր էկողը տերտեր է, օսկին սաղ-սալամաթ մեր տունը տանիկը ու հեչ մեկիմ չի ըսե››: Երբ տերտերը մոտեցավ քյասիբին, քյասիբն ուրախացավ:

- Տեր հայր,- ըսավ քյասիբը,- իմ հարը մեռնելեն առաջ իր ունեցած օսկին տարավ մեշան ու անտեղ թաղեց: Ես հանել եմ օսկին և կուզեմ տուն տանիլ: Օխտը օր է կայնել եմ ճամփուն քյանարը, շատ մարդիկ անցան, գնացին, հըմը ես հեչ մեկին ա հավատարիմ չճանաչեցի, իսկ քեզի, տեր հայր, ճանչեմ կը ինչըղօր աստծու մարդը, վեվ օր իրեն մեջ պայեկը իմ սըռը:

Տեր հայրն ասաց. ‹‹Օրհնած, օր աղանք բան կար, ինչի՞ չէիր ըսե››:

Պայման կապեցին, օր տերտերը օսկին ջորիներով տուն տանի և քիրին տեղը առնե օխտը օսկի:

- Օրհնած, իմ բաժինը քիչ է,- ըսավ տեր հայրը:

Քյասիբը ըսավ. ‹‹Տեր հայր, թող երկու բեռը քեզի ըլլի,

քշե էրթանք››: Քիչ օր առաջ գնացին, տեր հորը միտքը փոխ-վավ: - Օրհնած, իմ բաժինը քիչ է,- ըսավ անիկ: Քյասիբը ըսավ. ‹‹Տեր հայր, օխտը բեռնա քեզի, աստծու կրակնա քե-զի, քշե էրթանք››:

Հասան պաղ աղբրին: Քյասիբը շատ ծառվըցել էր: Ոս-կին հանելու վախտը, անիկ մե ոսկեցե թասըմ էր գտել: Ծո-ցեն հանեց թասը և ջուր խմեց:

Տեր հայրը ըսավ. ‹‹Օրհնած, մե թասըմ ջուրա տու ես խմեմ››: Քյասիբը ոսկեցե թասով ջուր տվեց տեր հորը: Տեր հայրը ջուրը խմեց և թասնա դրեց ծոցը:

- Օրհնած, ես տերտեր եմ, աս թասը ինձի լայեղ բան է,- ըսավ քյասիբին:

Քյասիբը հերսվեց, մի բուռ հող վերցրեց և նետեց տեր-տերին աշվնուն մեջ: Տեր հոր երկու աշվինա քոռցան: Քյա-սիբը ղաթրներն ու ոսկեստանը տարավ տուն, տոր ասօրա կուտե խմեկը:

Հակոբ Միքայելյան, Ծալկայի հայերի ազգագրությունը և բանա-հյուսությունը, Ե., 1998, էջ 175-176

# ԹԶՈՒԿԸ

Կար ժամանակ, որ Հարնա քաղքին մեջ մե հարուստ վաճառականըմ կապրի: Անիկ մե հատըմ մանչ ունիր: Եփ որ տղին նշանվելու վախտը քուգա, վաճառականը թոփ կենե երկրին մչի քուլլի ըռնտիկ աղջըկնուն: Աղջիկներեն հեչ մեկը մանչուն դուր չեն գա: Կանցնի մե վախտըմ, մանչը էրածը տեսնիկը մե չնաշխարհիկ աղջիկըմ, մե փերղզիմ: Եփ որ զարթիկը որոշեկը որ անպայման գտնի ադ աղջկան՝ ուրթեղ կուգե թող ըլլի: Ձին քարեկը, նստի ու ճամփա կըյնի: Կերթա, շատ ու քիչ կերթա, հասնիկը մե ուրիշ ճամփու, տեսնիկը որ ճամփուն քյանարը քըլքըլած էխտիար մարդըմ նստած է:

- Բարև երիտասարդ, ու՞ր կերթաս. աս ճամփով էրթցողը յա ետ չի գա, յա տա քուքա ինծի պես էխտիարցած:

- Չէ, հայրիկ,- կըսե տղան,- հեչ մի ղազամ ինծի չի կըրնա կայնեսնե իմ մտքեն:

- Բարի ճամփա քեզի, տղաս, հըմը նեղության մեջ որ ընկնիս ինծի միտքդ փի: Բալքի իմ խրատներով քեզի կըրնանամ քեմակ էնել:

Տղան ղամչըտեկը ձիուն ու կերթա առաջ: Կերթա, կերթա, հասնիկը ան քաղաքը, ուրտեղ որ կապրիր ադ ըռնտիկ աղջիկը: Շատ կտրիճ տղոց հետ կռվի հաղթեկը, աղջկանը կառնե ու ճամփա կըյնի շիպշիտակ տուն: Ճամփան անոնց ռաստ քուգա թզուկը և ճամփան բռնեկը (փակեկը): Տղին

հերսը կելլի, թուրը հանե ու թզուկին զայնեկը, օրթայեն կես կենե, հըմը թզուկը չի մեռնի: Տղան շատ զարմանակը: Նորեն կսկսե թրով կտրտել թզուկին, հըմը թզուկը կենա սաղ կը մնա: Աղտեղ տղան գլխու կըյնի, օր թզուկին հոգին մե ուրիշ տեղըմ պայած է, տոր հոգին չգտնի հնար չկա թզուկին մեռցնելու: Տղան աղջկանը կըսե դե մի վախտըմ ապրի թզուկին քով, օր սատանութունով իմանաս հոգուն տեղը: Աղջիկը ըրագի կըլլի ու վախտըմ կապրի թզուկի քով: Կամաց-կամաց աղջիկը կսկսե հարց ու փործ էնել թզուկին: Աղջիկը ըրագի չէ, օր իրեն էրթլեն ետև ինքը մենակ մնակը և բերզիկը, ադոր համարա զոռեկը, օր հոգուն տեղը իմանա ու եփ օր պարապ վախտ ունենա, անոր հետ խաղա: Աղջիկն օր շատ աղաչեկը, թզուկը կըսե, օր իմ հոգիս ավելին մեջ է: Էքսի օրը եփ օր թզուկը տուն քուգա, տեսնիկը օր աղջիկը ավելին հետ խաղ կենե, խնդալը քուգա ու աղջկանը վրան խնդակը: Աղջիկը կըռայեկը, օր թզուկը իրեն խաբել է, ավելը անթուն կը նետե ու բաշլայեկը լացը: Թզուկը ադ օր տեսնիկը, խղճակը աղջկանը ու սըռը դուս կըսե:

- Ծովին մեջ մե իրեղեն ձիմ կապրի, ունի մե աշքըմ: Ադ աչիչը մեջ է իմ հոգին՝ իրենք ճնճղուգի տեսքով:- Աղջիկը ադոնց մասին գողտու կըսե տղին: Տղեն էխտիարին միտքը կփերե ու կերթա քովը խորհուրդ իմանալու: Էխտիարը խորհուրդ կուտա, օր տղան քառասուն լիտր օխտը տարվա թունդ գինի լլե ան աղբրին գռին մեջ, ուրտից օր ձին ամեն

սապախտան ջուր խմեկը: Մենակ ծիուն քեֆովնալեն ետև հանել ադ իրեք ճնճղուզները. մեկը տեղն ու տեղը մորթել, մեկալ երկուսնա պայել: Մտեհան չենես ծիու պոչեն մազ վերցնելը, որ ղազայի ռաստ չգաս, կըսե էխտիարը:

Տղան կենե անանք, ինչղոր էխտիարն էր ըսե: Ու եփ օր երկու ճնճղուզները առած քուգա թզուկին ապրանքը, տեսնիկը, որ թզուկը տուն է էկե ու գլխու կըյնի, որ ինքը մեռնի տի, աղջկանը սխմեսնեկը:

- Ինսան օղլի, ի՞նչ ես էրե, որ ես թլանամկը,- կըսե թզուկը:

Տղան ադ վախտը կերևա ու երկրորդ ճնճղուզը մորթեկը թզուկին աչքին առաջը: Թզուկը ուժե կըյնի:

- Ինսան օղլի, գոնյա մեկը ինծի տու,- կըսե թզուկը:

Տղան չի տա, երրորդն ա մորթեկը, քանի որ թզուկը շատ ջահել տղոց էր խռիթ էրել: Թզուկը շունչը փչեկը ու վար կըյնի: Տղան ու աղջիկը նստած ծիանը, խնդլման քուգան տղայի հայրենի քաղաքը ու քառասուն օր, քառասուն գիշեր հարսնիք կենեն, կուրախանան, կուրախացնեն կը քաղքին քուլլի մարդոցը:

Հակոբ Միքայելյան, Ծալկայի հայերի ազգագրությունը և բանահյուսությունը, Ե., 1998, էջ 176-178

## ԱՂՔԱՏ ԾԵՐՈՒԿԸ

Կըլլի չի ըլլի մե աղքատ մարդըմ կըլլի: Մե օրըմ աս աղքատը փոսըմ փորեկը ու փառչըմ օսկի գտնիկը: Ծերուկը իրեն մեջ որոշեկը, օր փառչըմ օսկին տանի թագավորին նվեր տա: Մե օրըմ կելլի կերթա թագավորին պալատը: Թագավորի տան դռանը հսկող իշխանը կայնեցնեկը աղքատ ծերուկին ու հարցնեկը.

- Ի՞նչ կուզես, այ հալևոր:

- Մե փառչըմ օսկի եմ գտե, փերել եմ թագավորին նվեր տամ:

Իշխանը ասում է.

- Ինչ պարգև օր թագավորը քեզի տա, կեսը ինձի տի տաս:

Աղքատ ծերուկը համաձայնվում է ու գնում ներս:

- Թագավոր ապրած կենա,- ասում է ծերուկը և փառչըմ օսկին կուտա թագավորին:

Փառչըմ օսկին օր տեսնիկը, թագավորի աչվին կած կուտան: Թագավորը հրաման կուտա, օր ծերուկին ճերմակ հաց տան ուտելու: Վեզիրները ճերմակ հաց փերենկը:

Ծերուկը կըսե տե ես ճերմակ հաց չեմ ուզե, սև հաց կուզեմ:

Վեզիրները սաղ պալատին մեջ ժուռ քուքան սև հաց չեն գտնի: Վերջը դուս կելլին պալատեն, կաշեն օր պատին տակը մե մուրացկանըմ նստել է քարին վրա՝ սև հաց կու-

տե: Մոտենանկը մուրացկանին, ձեռքեն սև հացը կառնեն ու փերենկը պալատ: Ծերուկը սև հացը կուշտ կուտե ու խռ-րունկ քնիկը:

Էքսի օրը թեզըմ տեղեն կելլի ու կըսե վեզիրներուն.

- Փերեք հարուր չքուխ ու ինձի ծեծեցեք:

Վեզիրները հարուր չքուխ փերենկը:

Երբ թագավորը հրաման կուտա ծերուկին ծեծելու, ծե-րուկը կըսե.

- Թագավորն ապրած կենա, քիչըմ կեցիք:

Ծերուկը ներս կանչեկը թագավորի իշխանին ու կըսե.

- Ես իմ խոսքիս տերն եմ, պետք է իմ ստացածի կեսը քե-զի տամ:

Եվ հիսուն չքուխ զայնենկը իշխանին:

Ծերուկը կըսե.- Տե մնացածնա զարկեք, թող կշտանա:

Վեզիրները հիսուն հատա զայնենկը իշխանին:

Աղքատ ծերուկը կուշտըմ խնդակը թագավորի իշխա-նի վրա ու կերթա իրեն տունը:

Յակոբ Միքայելյան, Ծալկայի հայերի ազգագրությունը և բանա-հյուսությունը, Ե., 1998, էջ 178

## ԲՈԽՉԱՋԻ ԹԱԳԱՎՈՐԸ

Կըլլին չեն ըլլի իրեք քուր կըլլին: Ադոնք հար ու մար չեն ունենա: Աս քուրվտիքը տունը նստած զրցին կը իրար հետ: Պզտի քուրը քուրվտոնցը կըսե.

- Քուրվտիք, աշխրքին էրեսին ինչ կուզեք ըլլիք:

Մեծ քուրը կըսե,- ես կուզեմ, որ թագավորին մանչը ինձի առնե: Միջնակ քուրնա կըսե,- բանըմ չեմ ուզե, մենակ տե թագավորը ինձի շատ օսկի տա: Պզտի քուրնա կըսե,- բանըմա չեմ ուզե, մենակ տե թագավորը իմ բոխչաջիս ըլլի:

Դու մի ըսե թագավորը աղ սրային աքոշկին տակը անկաջ կենե: Թագավորը նես կերթա ու կըսե.

- Մեծ քուր, քեզի իմ մանչուս կառնեմ. միջնակին կըսե,- քեզի շատ օսկի կուտամ: Պզտի քուրոջնա կուտա մե մարդում ձեռքը ու կըսե,- ասոր տար ծառին կապե, թող ջանըվրոց ըլլի: Թագավորի հրամանով աղ մարդը աղջկանը տանիկը ծառեն կապելու: Հասնինկը օրա մեշան, աղջիկը աղաչեկը մարդուն, որ ծառեն չկապե: Աղ մարդը աղջկանը թողնի ու կերթա: Աղջիկը կուլա, քիչիկըմ ասդին-անթին պտըտիկը, իրիկուննա կելլի աղբրին վերըթիի ծառին ու քուն կըլլի: Լուսանակը օրան, աղջիկը տեսնիկը, որ մե օձըմ բնեն էլլավ՝ պլպլան քար դուս կուտա: Աղջիկը վախե-

նալուն ծառեն վար չի իջնի: Օձը բնեն հանած պլպլան բաները թարքյարտան բունը լլեկը: Քիչիկըմ ետև աղջիկը տեսնիկը օր մե ձիավորըմ քուգա, սիրտ կենե՝ ծառեն իջնի: Ձիավորը տեսնիկը օր աղջիկը մենակ կայնել է, կըսե տե՝ աղջի, արի քեզի տուն տանիմ:

Աղջիկը կըսե,- ես մեծ հարստություն ունիմ, քնե իրեք մեշոկ փի, մեջը լլենք տանինք: Էքսի օրը ձիավորը մեշոկնին փերեկը ու աղջկա պահանջով տուն կերթա: Աղջիկը մնակը մեշան: Առավոտը օձը պլպլան բաները հանեկը չորցնելու: Աղջիկը կերթա ու քուլլի լլեկը մեշոկնուն մեջ: Պայմանավորվածության համաձայն ձիավորը քուքա ու օսկին տանինկը տուն: Աղջիկը մե մեծ պալատըմ շինեկը, օր թագավորին պալատին շուք կուտա: Աս աղջիկը տոր աղբուրը ճամփուն երկու թարաֆը ծառ տնկեկը, օրթանա խալի փռե կը, աղբրին վերըթինա բաղնիք կը շինե: Թագավորը կիմանա օր ատանք մեծ պալատըմ կա, կըսե,- երթամ այեմ ատիկ վեվ է, օր իմ պալատես մեծ պալատ է շինե: Թագավորը կերթա տեսնիկը օր մե ըռունտ աղջիկըմ նստած է: Աղջկան օր տեսնի կը, թագավորը սիրահարվիկը: Աղջիկը թագավորին կըսե տե արի երթանք բաղնիք լողանալու: Աղջիկը իրեն հալավը բոխչա կենե ու թագավորին շալակը կուտա: Երբ հասնիկը բաղնիք, աղջիկը թագավորին կըսե, օր ինքը իրեն խոսքը էրավ: Թագավորը կըսե տե ինչ էիր ըսել:

Աղջիկը կըսե,- թագավոր, ես ըսել էի օր դու իմ բոխչա-ջին ըլլենաս, վերջը եղար:

Հակոբ Միքայելյան, Ծալկայի հայերի ազգագրությունը և բանահյուսությունը, Ե., 1998, էջ 179-180

## ԱՂՎԵՍԸ ՄՇԱԿ

Աղվեսը կերթա արտը քար խտկելու: Արտը մտնիկը ու կսկսե քարերը հողով ծածկել: Տուն քալու վախտը ուժեղ քամի կելլե ու հողը քշեկը: Արտին տերը կերթա արտը, տեսնիկը օր սաղ քարը արտին էրեսն է: Աղվեսին կըսե,- աս ինչ ես էրել, աղվես աղբար:

- Քիրվա ջան, էլա էի ծածկե, օր հեչ մե քարըմ չէր էրևա, անտեր քամին սաղ այան հանեց:

## ԳՈՂԵՐԸ

Գողերը մտնինկը մե մարդում տունն ու թալնենկը: Գեղացիկ թոփ կըլլին, ափսոսանկը, կըսեն մեղք է, շատ տղա ունի, ինչըղ պիտի պահե:

Այազմեցի Մեքոն, օր ադ վախտը հոտ կըլլի, կըսե.

- Ինչի մեղքակկը, բալքի գողցողը ադորեն շատ տղաք ունի, հըբը անիկ ինչըղ դի պահեր:

## ԴԱՎԱՆ ԳՈՂՑԱՆ

Մե ծալը պակաս կնիկըմ երկու մանչ ունիր: Խեղճ տուն էին, անոթի էին մնացել: Մանչերը մտածենկը դե ինչ էնեն, օր բանըմ ճարեն ուտելու համար: Որոշեն կը թագա-

վորին դավան գողնան: Կերթան դավան գողնան փերենկը: Մորնա թամբեյ կենեն, օր իրեն պահե թաժժա հարսի պես, ձեն չհանե: Վալվալան կյնիկը, օր թագավորին դավան գող-ցել են: Մարն օր ձեները կիմանա, կերթա թագավորին քով ու կըսե, թե երբ թաժժա հարս էի մանչերս դավան գողցան:

Թագավորին հերսը կելլի, կըսե.

- Իսի ծալը պակասին դուս էրեք, իմ դավան իրեք օր է, օր կորել է, իսկ դու պապպիս տարվա հարս ես:



## ԿԱՇԻՆ ՉՈՐՑՆԵՆԿԸ

Կըլլի չի ըլլի մե մարդըմ կըլլի: Ադ մարդը մեկիմ քավոր կըլլի: Իրեն մոզիկը տանիկը սանորը քով դշլա կուտա: Գա-րունըն օր քուգա, կերթա օր մոզիկ փերե: Սանամարը հաց կըքնե: Հացն օր կուտեն պրծնինկը, սանորը հարցնեկը.

- Քիրվա, մոզիկս հեչ մեծըցել է:

- Շատ է մեծըցե, քավոր ջան, հըմը կաշին փռել ենք չորցնելու:

## ՄԱՀԱՑԱԾԸ

Սարին չոբըներեն մեկը մեռնիկը: Բան չեն գտնի, օր մե-ռելը գեղ տանին: Չարասըրզին չոբնին մեռելը կապեցին

գոմշին միջացը, որ գեղ տանի: Ճամփան գոմեշն որ շոգիկը, մտնիկը ջուրն ու ջրին մեջ պառկիկը: Մեռելը տանող չոքանը մոտենակը գոմշին ու զայնելով մեռած մարդուն, կըսե,- ինչըղ մեռել ես, որ մե օհոմ չես կրնա ըսել:

## ՈՂԲԱՑՈՂ ԿՆԻԿԸ

Շատ առաջ մե գեղիմ մեջ մարդըմ մեռնի կը: Կնիկը կու-լա մարդուն մեռելին վրա ու ձենով կըսե.

- Ղարամանդուլ արխըղիդ մեռնեի, կարակուլ փափ-խիդ մեռնեի, ազիատսկի սափքնուդ մեռնեի, մեծ թոփ արծ-թե քյամարիդ մեռնեի: Անկաջ էնողները կնկանը կըսեն, թե աղ քու ըսածներդ մարդդ ունի ր:

Կնիկը կըսե,- չունիր, հըմը պիտի առնեինք:

## ՈՒՌԱԾ ԿՈՎԸ

Մե գեղացում կովը բիրդամ բիրա ուռի կը: Դրկցնին իմաց կուտան կովին տիրոջը կնկանը: Կնիկը վազզեկը կո-վին քով: Իրեն մարդը տեսնի կը, որ կնիկը վազզեկը, թե ո՞ւր ինքը չգիտե: Դրկցին հարցնեկը դե իրեն կնիկը ուր կը վազզե: Դրկիցը կըսե դե կովը ուռել է, վազզեկը կովին:

Մարդը կըսե,- աստված սիրեք, դարձուցեք աղոր, կո-վը կազատվի, ինքը տրաքի կը:

## ՉԱՅՆԻԿ ԿԵՓԵ

Մե գեղացում տունը միսավիր քուքան: Մարդը կնկա-նը կըսե.

- Աղջի, միսավիրնում չայ էրե, դոր մենք հաց ուտենք չայը կեփի:- Շատ շտապելով, կնիկը դարտակ չայնիկը թնե-կը վառած կերասինկայի վրա: Տանտերն ու միսավիրները կեզաթ, հա կեզաթ, չայ չկա: Տանտերը կերթա քիլարը կնկանը հարցնեկը դե չայը չեղավ: Կնիկը կերթա կերասին-քին թարաֆը ու կըսե,- վո'ւյ, քոռանամ ես, չայնիկը դար-տակ եմ թրե կերասինկին վրա:- Մարդուն հերսը շատ կելլե կնկանը վրան ու կըսե,- աս կնիկը չայ խո չի էփե, չայնիկ կե-փե:

## ՄԵ ԼԻՏՐԸՄ ՆԱՎԹ ՏՎԵՔ

Ղաբուռ գեղը նավթ չէր ճարվի: Գեղացի Գուքունը մե շիշըմ կառնե կերթա տանուտեր Արբենց Օվեսին քով:

- Օվես տացու,- կըսե Գուքունը,- թաժժա խաբար չես իմացե:

- Ի՞նչ խաբար, բալաս,- հարցնեկը Օվեսը:

- Քաղաք իրեք վագոն նավթ են Քուռը լցել տեղ չըլլելու պատճառով,- կըսե Գուքունը:

- Կարող է աղանք պատահի,- կըսե Օվես տացուն:

Գուքունը իրեն քովի մեկ լիտրանոց շիշը կերկնցնե դե-պի Օվես տացուն ու լիտրըմ նավթ կուզե: Սատանա Օվե-սը, որ հասկցել էր Գուքունին, ասում է,- այ տղա, ուզածդ մե լիտրըմ նավթ չէ՞, ինչո՞ւ մե լիտրըմ նավթի համար մարդուն իրեք վագոն նավթը Քուռը լցիր:

## ԳՈՂ ՄՈԼԼԱՆ

Մոլլան կերթա դարման գողնալու: Խարտոցով մար-գին դռանը զռզան կըռեկը: Աղ վախտը մե մարդըմ վրա քու-գա ու մոլլին կըսե,- մոլլա, աղ ի՞նչ կենես:

Մոլլան կըսե,- սազ չալեմկը: Մարդը կըսե,- ինչըղ սազ չալեսկը, որ ձենը չի էլլի: Մոլլան կըսե,- սապախտան կել-լի:

## ԽՈՋԱՅԻՆ ԿՆԻԿԸ

Խոջային կըսեն դե կնիկդ շատ պըտըտիկը:

Խոջան կըսե,- ինչ պըտըտտիկը օր մեր տունը հեչ չի քա:

## ՍՏԱԽՈՍ ԽՈՋԱՆ

Մե մարդըմ խոջային կըսե դե էշը տուր էրթամ ջաղաս-կը:

- Էշը նախրն եմ խառնե,- կըսե խոջան:

Ադ սըրային էշը զռակը:

Մարդը կըսե,- հըբը կըսես դե էշը նախրն եմ խառնե:

Խոջան կըսե,- մարդուն խոսքին չես հավատա, իշուն զըռոցին հավատաս կը:

Յակոբ Միքայելյան, Ծալկայի հայերի ազգագրությունը և բանահյուսությունը, Ե., 1998, էջ 180-183

## ԲԱԶՄԱԶԱՆԸ

Լինում է, չի լինում՝ Չինումաչինում մի աղքատ թագավոր է լինում: Թագը՝ իր փառքով, պալատը՝ իր նիստ ու կացով, բայց այս թագավորի վերև-ներքևը, հույսն ու ապագան երկու էշն են եղել: Մեկի անունը Նազան, մյուսինը՝ Զանազան: Բայց ի՛նչ էշ: Խելոք, շնորհքով: Բա աշխատո՛ղ, աշխատո՛ղ: Քար տուր շալակներին՝ հանեն Աբուլ սարը:

Մարդուս մի աչքն է ծակ, էշինը՝ երկուսը: Մի օր Զանազանը թամահ[1] է անում, մոլլի էշի հետ խունջիկ մունջիկ գալով մտնում է Թիք քարի հետևը՝ պաղ ջուր խմելու: Մի բերան խմում է, փորը կախում:

Բարով ու խերով սիրուն սարերով անցնում է ինը օր ու ինը ամիս՝ զօր ու գիշեր: Տիրոջ սրտով, ալլահի աբով[2]՝ մի պայծառ օրով Զանազանը քուռակ է ունենում: Փոքրիկ, սիրուն, աչքերը սև, ականջները կախ: Մի պատկեր: Տեսնես՝ քոնը կմոռանաս: Մայրը աջ է նայում, ձախ է նայում, իր աչքի լույսին անվանում է Բազմազան:

Թե մյուս քուռակների օրն օր էր, ամիսը՝ ամիս, Բազմազանի օրն ամիս էր, ամիսը՝ տարի:

Գարնան շոգերին մի լուսավոր առավոտ Բազմազանի մռութը[3] լվանում են, քյանքուլը[4] սանրում, քյանքուլին զան-

---

[1]Թամահ անել (բրբ.) - աչքածակություն անել:
[2]Ալլահի աբով (բրբ.) - պատահականության քմահաճույքին թողած, աստծուն ապավինած:
[3]Մռութ (բրբ.) - դեմք:
[4]Քյանքուլ (թուրք.) - ճակատի մազափունջ:
[5]Փալանջի (թուրք.) - էշի թամբիկ (փալան) կարող:

գակ կախում, տանում փալանջու[5] մոտ, որ նրան փալան կարի:

Թե՛ մեր օրհնանքից, թե՛ էշի բախտից, այս փալանջին շատ ալլահապաշտ է լինում: Մինչև ղուրանը դեմը չդներ, մախաթ ձեռքը չէր առնում: Բազմազանը մեկ է գնում սրա մոտ, երկուս է գնում՝ ղուրանն անում է անգիր: Որ սուրահի[6] տակ սևով է գրված՝ կարդում է, որի տակ կարմրով՝ երգում: Միայն լսես: Ձայնը՝ հզո՜ր, գրավի՜չ: Որ գոռում է, գոռոցը հասնում է Աբբասթումանն[7]:

Փալանջին որ լսում է, ուրախությունից մի փալանի փոխարեն, սրան՝ երկուսն է կարում:

Անցնում է մի քանի օր, Զանազանը գլխի է ընկնում, որ իր իշուկի խելքը ծովը լցնես՝ տեղ չի անի: Սրտից արյունն է կաթում. իր տաղանդավոր էշի քուռակն ո՜ւր, այս աղքատ թագավորն ո՜ւր:

Մի օր Նազանի հետ, երկու էշ, խորհուրդ են անում, խելք խելքի են տալիս, լցնում-դատարկում, Բազմազանին կանչում են, թե՝ Բազմազա՛ն բալա, եթե այստեղ մնաս, մեր փալանը դու կշալակես: Վաղը Մահմադի[8] ծննդյան օրն է, տոն է, պետք է մեզ էլ յոնջա[9] ուտելու տանեն: Մենք Նազան մորքուրի հետ կպոկվենք հարավ, դու գնա դեպի հյուսիս: Գնա ու գնա, մինչև քո բախտը գտնես:

---

[6]Սուրահ (արաբ.) - նկար:
[7]Աբբասթուման - քաղաք հարավային Վրաստանում:
[8]Մահմադ - իսլամի հիմնադիր, մարգարե (մ.թ. 7-րդ դ.), Ղուրանի հեղինակը:
[9]Յոնջա (թուրք.) - առվույտ, խոտերից ամենաանուշը:

Բա', հետո էլ ասում ենք՝ էշն իր խերն ու շառը չգիտե:

Հաջորդ օրը էշերին իրոք տանում են յոնջա ուտելու: Է'հ, սոված էշ, ծրի յոնջա: Հարձակվում են երեքով, ուտում, հա' ուտում են: Երկուսը պոկվում են հարավ, հովիվը գնում է հետ բերի՝ Բազմազանը փախչում է հյուսիս: Անցնում է յոթ սար ու յոթ ձոր, յոթ ցամաք ու յոթ ծով, հասնում է մի մեծ քաղաք: Մտնում է քաղաք, տեսնում է, ի՞նչ տեսնի: Հազար ու հազար մարդ, էշերն առջևից մտնում են մի հավասար կալ: Կալում մսուրներ են դրված: Մսուրներում՝ ալլահի ամեն բարիքը: Տանձն ու խնձորը, չիրն ու չամիչը ոտատակ է գնում: Որը քաշում է, որը՝ բռնում, որը ծիծաղում է, որը՝ պար գալիս: Մարդիկ առնում, հա' առնում են, բարձում էշերին, գնում են դուրս: Խեղճ անասունն ի՞նչ իմանար, որ շուկա է ընկել: Տեսնում, վախից փորը թուլանում է, վազում է պատի տակ:

Թեթևանալուց հետո սիրտ է առնում, գալիս է կալի մեջտեղը կանգնում, սկսում է զռռալ: Մեկ է զռռում, երկուս է զռռում, տեսնում է բոլորն էլ դատարկ զռռացող են, իր վրա ուշադրություն դարձնող չկա: Ակնոցը դնում է քթին, ծոցից դուրանը հանում է ու ամենալավ քառյակներից մեկը սկսում է կարդալ: Մարդիկ որ հարազատ տողերը լսում են, գործերը թողնում՝ նայում են կարդացողին: Տեսնում են՝ էշ է: Քյանքուլից բռնում են, հետևին փայտով խփելով տանում են արքայանիստ, թե՝ հալ ու հեքիաթ[10] այսպես բան,

[10]Հալ ու հեքիաթ (բրբ.) - այսպես ու այսպես:

մի էշ է հայտնվել՝ ղուրան է կարդում: Խոսքը հասցնում են սուլթանին: Սուլթանը գլուխը դես ու դեն է տանում, կարգադրում է էշը մտցնել պալատ: Էշը քացի տալով քշում են ներս:

Բազմազանը տեսնում է մի գոմ, բայց շատ մեծ ու լուսավոր, մաքուր հավաքած, մեջը ոչ թե թրիք՝ թրիքի հոտն էլ չկա: Գոմի վերևը, ուր սովորաբար մսուրն է, բարձր աթոռի վրա նստած էր սուլթանը, ալ ու խաշխաշ հագած: Կողքին՝ երկու կին արմավենու ճյուղերով անուշ հով են անում: Իրենք սև, բարձրահասակ, ամեն մեկի թևը հաստ՝ երկու իշառոտք: Գոմի պատերի տակ գույնզգույն ծաղիկներ են, հավասար արածած թփուտներ: Թփուտների վերևում՝ սոխակներ են երգում, կարծես իր լքած հայրենի դաշտում: Բազմազանը տեսնում է, հիշում, որ երկու օր է, ինչ բան չի կերել, սիրտը յոնջա է ուզում:

Սուլթանը, որին բոլորը Ասլան[11] էին կոչում, ունքերը կիտում է, պահանջում, որ մոտ գան: Մոտենում են: Երբ նա խեթ հայացքով նայում է Բազմազանին, սրա ոտքերը թուլանում են: Սուլթանը պահանջում է գիրքը բանալ ու կարդալ: Բազմազանը ակնոցը դնում է, ծոցից ղուրանը հանում, զգուշությամբ բացում, սկսում է կարդալ: Բոլորն ուշադիր լսում են և, զարմանալով, իրար հետ փսփսում: Այդ պահին մի սևազգեստ կին ներս է մտնում, սուլթանի ականջին ինչ-որ բան ասում ու գնում է: Էշը ղուրանը թողնում է...

[11]Ասլան (թուրք.) - առյուծ, տվյալ դեպքում՝ տղամարդու անուն:

Սուլթանը մատները տանում է բերանի մոտ, թե՝ այս է ալլահը, այս էլ ես եմ. համաձայն եմ:

Բազմազանը շուռ է գալիս, թե՝ քո կնոջ ծառան քեզ հարցրե՞ց՝ էշը էգ է, թե՞ որձ: Ճի՞շտ է:

- Ճիշտ է,- պատասխանում է զարմացած սուլթանը:

- Նա ուզում էր սրանով ասել, թե ինքը ամաչում է ամեն մի որձ էակից: Ճի՞շտ է:

Սուլթանը բերանը բացում է ու էլ չի փակում:

- Կարգադրիր,- շարունակում է Բազմազանը,- բերել այդ ծառային այստեղ և հանել նրա փարաջան:

Սուլթանն առանց երկար մտածելու կրկնում է Բազմազանի պահանջը: Ծառային բերում են, բայց նա աղաչում-պաղատում է բաց թողնել, քանի որ ինքը մահմեդական է, և տղամարդկանց ներկայությամբ երեսը բանալուց հետո, լավ է՝ ջուրն ընկնի խեղդվի: Բոլորը նայում են Բազմազանին, բայց էշի ասածն ասած է:

Հենց փարաջան քաշում են ծառայի դեմքից, տեսնում են, որ նա... մորուքով է: Բերում են հաջորդ ծառային: Սա էլ է դուրս գալիս մորուքով: Բերում են երրորդին...

Մեծ աշխարհ է. էշը որ դուրան կարդաց՝ սուլթանի կինն էլ սիրած կպահի:

Սուլթանը աչքերը չռած նայում է. կատաղությունից՝ և' ծառաներին, և' կնոջը կարգադրում է կապել ձիերի պոչից ու կտորել քարքարոտ անապատներում: Նազիր-

սկսում է հռհռալ: Սուլթանը զարմանքից քար է կտրում:

- Ինչո՞ւ ես ծիծաղում, ա՛յ անգլուխ էշ՝ էշի ծնունդ,- զայրանում է սուլթանը:

Էշը բացում է մի նոր էջ, դունչը տնկում ու կարդում է.

Եթե կուզես կոչվել Ասլան,

Կինդ պիտի լինի ինսան[12]:

Ակնոցը հանում է, դուրանը փակում, դնում է ծոցը:

- Ո՞րն է տողերիդ իմաստը,- հարցնում է սուլթանը Բազմազանին:

Բոլորը չորանում են, բայց Բազմազանը բան չի ասում: Սուլթանը ջղայնացած կրկնում է: Էշը պոչը թափ է տալիս ու նորեն լռում է: Նազիր-վեզիրները ծառա են կանչում: Ծառաներն էլ՝ թուրքի շուն: Բազմազանին կանգնեցնում են սենյակի մեջտեղը, ավելը մտցնում են պոչի տակ, մտրակը քաշում մեջքին: Էշը զռռում է, բայց միտքը չի փո-խում. էշի ասածն ասած է:

Սուլթանը կարգադրում է բոլորին հեռանալ, կանչում է Բազմազանին, դեմը չիր ու չամիչ դնում, ասում է.

- Ա՛յ Բազմազան, դու մի ախպար, ես՝ երկուս: Ասա, քո հռհռոցի իմաստը ո՞րն է:

Բազմազանը մի երկու բերան չամիչից փափկում է, պատասխանում.

- Երկինքդ պայծառ մնա, ա՛յ սուլթան, բայց ինչ ասեմ՝ պետք է կատարես:

[12] Ինսան (թուրք.) - մարդ:

## ԾԱԿ ԼՑՆՈՂ ՊՈՂՈՍԸ

Լինում է, չի լինում՝ մեր լի ու առատ Քաղաքում[13] Պողոս անունով մի ուրախ բեռնակիր է լինում: Լույսի հետ վեր է կենում, էշը սայլակը լծում, գնում է շուկա: Մարդկանց ծանր բեռը կրում է վերևից ներքև, ներքևից վերև, երեկոյան առևտուրն արած վերադառնում է տուն, կանչում ընկերներին՝ քեֆ, ուրախություն անում՝ մինչև կեսգիշեր: Պառկում քնում է, հանգստանում, առավոտյան անցնում իր գործին:

Երբ սրա ընկերները շատ են շատանում, աղմուկը մեծանում է: Ձայնը հասնում է թագավորին: Թագավորը վերևի պատուհանից ներքև է նայում՝ տեսնում է մի աղքատ բեռնակիր ամեն օր կերուխում է անում, ինքը՝ աշխարհի տերը՝ դարդ ու ցավից քուն չունի: Կանչում է նազիրին, կարգադրում է մի հրովարտակ կազմել, որ այս մարդու քեֆը կտրվի: Նազիրը գնում է, մնացած վեզիրներին կանչում է, թե՝ եկեք թագավորի հրամանը կատարենք: Գլուխներն իրար են տալիս, միտք ու միտք անում, գալիս թագավորին ասում են, թե՝ թագավորն ապրած կենա, մենք շատ ենք մտածել ու ճիշտ ու ճիշտ որոշել, որ էշով բեռ կրելը ժողովրդին վնաս է: Մարդիկ պետք է իրենք բեռ կրեն, որ մկանները պինդ մնան: Ժողովուրդը մեղք է, հալից կընկնի, էշով բեռ կրելը պետք է արգելել:

Նազիրները հուշում են, թագավորն էլ որոշում է: Թա-

[13]Քաղաք - ք. Ախալքալակ, Ջավախքի վարչական և մշակութային կենտրոն:

վեզիրներին, որոնք թույլ էին տվել այս խայտառակությու-նը, ուղարկում է յոնջա ուտելու, իսկ Բազմազանին բազ-մեցնում է իր աջ կողմը, միշտ չիր ու չամիչ է տալիս, որ գլու-խը լավ աշխատեցնի, լավ խորհուրդներ տա և ինքն էշի խելքով խելացի-խելացի երկիրը կառավարի՝ հաստն էլ գոհ լինի, բարակն էլ: Է'հ, մտածում է, էշն աշխատավոր կեն-դանի է, մշակի հալը լավ կիմանա:

Բա', դրա համար են երեխաներին ասում՝ սովորեք, խելք հավաքեք: Խելքն էշին էլ է մարդ դարձնում: Մարդս էլ որ էշ չլինի, էշի գինը մեկին երկուս կլինի:

գավորին ի՞նչ կա. մեջտեղն ուտում է, եզրերով ման է գալիս:

Հաջորդ օրը հրովարտակ են գրում, տալիս են գզիրի ձեռքը, թե՝ տար կարդա ժողովրդին: Գզիրը գնում է, թաղից թաղ ընկնում, թագավորի հրամանը հասցնում է ժողովրդին:

Պողոսը լսում է, երեսին խաչ է հանում, ասում է.

- Թագավորի հրովարտակ է: Հրովարտակն էլ օրենք է: Մեռնեմ օրենքի սրբությանը:

Գալիս է տուն: Էշը բաց է թողնում, նստում է ու ընկնում մտքերի ծովը: Աչքը բացել է, այս էշն է տեսել ու այս սայլակը, հայրը աչքը բացել՝ այս էշի մորն է տեսել ու այս սայլակը: Սայլակն էլ իրեն մնացել է հորից, հայրն էլ ժառանգել է իր հորից...

Անցնում է մի օր, թե երկու օր: Տղան գալիս է, թե՝ հայրի'կ, կոշիկս պոկվել է: Կարելու համար փինաջին[14] տաս շահի[15] է ուզում:

- Ահա,- մտածում է Պողոսը,- ես իմ գործը գտա:

Մուրճ ու մեխ է առնում, գնում է նստում շուկայի մեջտեղը, կանչում է.

- Նալեմ, մեխեմ, պադմյոտկա[16] զարկեմ:

Դառնում է փինաջի: Ցերեկով փինա է անում, երեկոյան գալիս է տուն, տան հոգսը հոգում, մնացածով նստում

[14]Փինաջի (թուրք.) - կոշիկ վերանորոգող:
[15]Շահի (պարսկ.) - պարսկական մանր դրամ:
[16]Պադմյոտկա (ռուս.) - ներբան:

քեֆ է անում, ուրախանում: Սրա ընկերները նորից են շատանում, սկսում են աղմուկ-աղաղակ անել: Ձայնը հասնում է թագավորին: Թագավորը վերևի պատուհանից ներքև է նայում՝ տեսնում է էլի նո'ւյն Պողոսը, էլի նո'ւյն քեֆը: Կանչում է նազիրին, թե՝ գնացեք Պողոսի քեֆը խափանեք: Նազիրը կանչում է մնացած վեզիրներին, միտք ու միտք են անում, գլուխներն իրար տալիս, քչում, քչփչում, գալիս են թագավորի մոտ, ասում են.

- Թագավորն ապրած կենա, մեխով կոշիկի ներքան խփելը վտանգավոր է, մեխը կարող է ոտքը խրվել, մարդ սպանել, փինան պետք է արգելել: Ժողովուրդը մերք է:

Նազիրները հուշում են, թագավորն էլ որոշում է: Թագավորին ի՞նչ կա, մեջտեղն ուտում է, եզրերով ման է գալիս: Գլուխը ծանր-ծանր վերև-ներքև է տանում, կարգադրում է հրովարտակ գրել: Հրովարտակը գրում են, տալիս են գզիրի ձեռքը, թե՝ տար հայտարարիր, թող աշխարհն իմանա, թե թագավորն իր ժողովրդի մասին ինչքան է հոգ տանում:

Գզիրն ընկնում է թաղից թաղ, շուկայից շուկա, մինչև քերանի չորանալը կարդում, հա' կարդում է:

Պողոսը լսում է, երեսին խաչ է հանում, ասում է.

- Թագավորի հրովարտակ է: Հրովարտակն էլ օրենք է: Մեռնեմ օրենքի սրբությանը:

Պողոսը մեխն ու մուրճը վայր է դնում, տանը նստում

թքվում է: Շատ է նստում թե քիչ, բայց վերջում հարևանի կինը գալիս է, թե՝ Պողոս ախպար, մի ճար արա, ամանը ծակվել է, ապուր ենք եփելու, աման չունենք, սոված ենք: Պողոսը մուրճն ու պղինձը իրար է տալիս, ամանի տակը կարկատում, վերադարձնում է հարևանի կնոջը, ինքը նորից նստում թքվում է: Սոված, ծարավ. ինքն էլ, երեխաներն էլ: Մեկ էլ տեսնում է՝ նույն հարևանի աղջիկն արագ-արագ մի ուրիշ աման ձեռքին իրենց տունն է գալիս:

- Է'հ,- մտածում է Պողոսը,- վատ սովորեցին: Մի աման էլ են բերում: Իմ նեղ սիրտը՝ սրանց ծակ ամանները:

Աղջիկը գալիս է, ամանը դնում է Պողոսի դեմը, թե՝ Պողո'ս քեռի, մայրս քո սարքած պղնձի մեջ թանով ապուր է եփել, մի աման էլ ձեզ ուղարկեց, անուշ արեք: Երեխաներն ապուրն ուտում են, բերանները սրբում, քաշվում են մի կողմ, իսկ Պողոսը մուրճն ու պղինձը վերցնում, ընկնում է փողոցները.

- Ծա'կ աման, ծա'կ աման: Բերե'ք տաքացնեմ, պղինձը հալեմ, լցնեմ կարկատեմ: Ծա՜կ լցնեմ, ծա՜կ լցնեմ:

Մի Ջավախք, մի ծակ լցնող Պողոս: Է'հ, Ջավախքի ո՞ր դուռը բանաս, որ չորս պղնձի տակ հինգ ծակ չլինի: Պողոսս նորից տան հոգսերը հոգում է, հետն էլ քեֆ է անում:

Թագավորը լսում է, նորից կանչում է նազիրին, ասում է՝ գնա մի ճար արա: Նազիրը իր հերթին կանչում է վեզիր-

ներին, գլուխներն իրար են տալիս, փսուն-փսփսում, գալիս են թագավորի մոտ.

- Թագավորն ապրած կենա: Ջավախքում ամանի հետևը լավ է ծակ մնա, քան թե լցվի: Ծակերը լցվում են պղնձով: Պղինձն էլ նորից ծակվելուց վախենում է: Մարդս կարող է ճաշ եփի, ամանը ծակվի, ճաշը լցվի կրակին, համ ճաշը փչանա, համ կրակը: Ժողովուրդը մերք է, ծակ լցնելը պետք է արգելել:

Նազիրները հուշում են, թագավորն էլ որոշում է: Թագավորին ի՞նչ կա, մեջտեղն ուտում է, եզրերով ման է գալիս: Գլուխը ծանր-ծանր վերև-ներքև է տանում, կարգադրում է հրովարտակ գրել: Հրովարտակը գրում են, տալիս են գզիրի ձեռքը, թե՝ տար հայտարարիր:

Պողոսը տեսնում է, որ ոչ առջևից մի բան մնաց, ոչ՝ հետևից: Առավոտյան շուտ վեր կենում, գնում է թագավորի մոտ:

- Մի թախտդ երկուս դառնա, թագավո՜ր,- դիմում է նա, գլուխը գետին տալով,- եկել եմ մոտդ, բան խնդրեմ:

Թագավորը սրան դանդաղ ուսումնասիրում է ոտքից գլուխ, ձախ ունքը բարձրացնում է, ասում.

- Թե փող ես ուզում, թագավորները փող չեն տալիս: Ուզա'ծդ ասա:

- Մեծ մնաս, թագավոր: Փողի արժեքը՝ խեղճը գիտե: Եկել եմ խորհուրդ տաս:

- Խորհուրդն անվճար է,- պատասխանում է թագավորը:

- Սկզբից ասա, թագավո՜ր, թե մի բանից տասը կտոր ունենաս, ինչպե՞ս կբաժանես:

- Ասեմ,- պատասխանում է թագավորը գլուխը թեքելով,- հինգ կտորը՝ թագավորին: Այս մեկը հաստատ է: Մեկը՝ նազիրին, որ վեզիր ընտրի: Մեկը՝ վեզիրներին, որ լավ խորհուրդ անեն: Ութերորդը սպարապետին՝ լավ կռիվ անի: Մեկն էլ տանք հարկահավաքին՝ լավ հարկ հավաքի: Մեկն էլ թողնենք թագավորին. թագավոր է, թող նրան էլ մի կտոր ավելի հասնի:

- Բա ժողովրդի՞ն,- զարմացած հարցնում է Պողոսը:

- Եղունգ ունես՝ գլուխդ քորիր,- հանգիստ պատասխանում է թագավորը:

- Մեծ մնաս, թագավոր,- նորից դիմում է Պողոսը,- բայց եթե թևերդ հետևդ կապված են, գլուխդ ինչպե՞ս քորես:

Այս մի թագավորը հո Ջավախքից էր. խելքը՝ ծովից ծով: Սա իրոք պատկերացնում է, որ ձեռքերը կապված են: Փորձում է գլուխը քորել. ճար չկա: Կանչում է նազիրին, կարգադրում է կանչել վեզիրներին, ամեն մեկի ձեռքը մի թուղթ ու գրիչ է տալիս, հրամայում է՝ այս պահից Ջավախքում ծանր բեռը միայն էշով կրեն, տակը պոկված կոշիկ չհագնեն, ծակ ամաններով ճաշ չեփեն: Հրովարտակը գրում են, տալիս են հինգ գզիրի ձեռք՝ տանեն կարդան ժո-

ղովրդին:

- Եթե թագավորն էլ է հասկացել, որ ծակ ամանով ճաշ չի եփվի,- ուրախանում է Պողոսը,- գործը խեր է:

Գլուխ է տալիս թագավորին ու հեռանում պալատից:

Վերևից ընկնում է երեք խնձոր. մեկը՝ լսողին, մյուսը՝ ականջ դնողին, երրորդն էլ՝ Աբուլ սարին:

# ՈՍԿՈՒ ԿԱՐԱՍԸ

Լինում է, չի լինում՝ մի աղքատ գյուղացի է լինում: Զատիկից մի օր առաջ սա երազում իր մեռած պապին է տեսնում՝ մութ գիշերով դեմ էր գալիս՝ կարմիր վարդը ձեռքին: Մոտենում է, վարդը կպցնում է թոռան ճակատին ու անհետանում:

Գյուղացին քրտինքի մեջ կորած արթնանում է, երեսին խաչ հանում, հանգստանում է, շուռ է գալիս կողքի, նորից քնում:

Առավոտյան աչքերը բացում է հարևանի կով ու ոչխարի աղմուկից, բերանը չորացած: Կնոջից մի բաժակ պաղ ջուր է ուզում: Խեղճ կինը գնում է բերի, բերելուց ձեռքը դողում է, տան միակ բաժակը գցում, անում է հազար կտոր: Գյուղացին ջղայնանում է, շալվարը քաշում է վերև, սև էշն առաջ գցում, տանում է արածելու:

Դուրս է գալիս գյուղի ճանապարհին ու... ճանապարհի եզրին տեսնում է մի նոր, գեղեցիկ կարաս: Մոտենում է կարասին, բաց է անում բերանը ու տեսնում է, ի՞նչ տեսնի, կարասում լիքը ոսկի է:

Գյուղացու սիրտը թև է առնում, բարձրանում ու իջնում է: Սա նայում է երկնքին ու երկրին, ճակատը տրորում է ու որոշում, որ այս ոսկին աստված է գցել ճանապարհին, ճանապարհն էլ՝ գյուղինն է, ուրեմն ոսկին էլ պետք է բաժանել բոլոր գյուղացիներին: Իսկ քանի որ աստված ամեն ինչ

սիրում է լուռ անել, գյուղացիներն աստծու տվածը պետք է գլխիկոր ընդունեն ու նրա փառքի մեծության համար եկեղեցում մոմ վառեն:

Որոշումն ընդունում է, ոսկին ծածկում փեշի տակ, տանում է գյուղ, իրեն վերցնում է չորս ոսկի, իսկ հարևաններին՝ ամենին տալիս է հնգական:

Մի ժամից լուրը հասնում է թագավորին, թե մի անգլուխ ոսկի է գտել, դրել է փողոցում՝ բաժանում է, իրեն էլ բոլորից քիչ է վերցրել:

Թագավորը լուրը լսելով՝ մի կողմից կատաղում է, մյուսից՝ զարմանում: Կարգադրում է բռնել գյուղացուն ու բերել:

Նազիրներն ուղարկում են ծառաներին, սրանք բռնում են գյուղացուն, բերում շպրտում են թագավորի ոտքերի տակ: Շալվարը վրայից հանում են, մի քանի կարմիր վարդի ճիպոտ կոտրում փափուկ տեղին:

Երբ գյուղացին ուշքի է գալիս, թագավորը կարգադրում է պատմել եղածը, և գյուղացին պատմում է այն, ինչ մենք արդեն գիտենք:

- Ա՛յ հիմար,- գոռում է թագավորը:- Ինչո՞ւ ոսկին տարար գյուղ, ոչ թե բերեցիր թագավորին:

- Անպակաս լինես, թագավոր,- բացատրում է գյուղացին:- Բայց չէ՞ որ ոսկին ես գտել էի ճանապարհին, իսկ ճանապարհը գյուղինն է:

Թագավորը զարմանում է գյուղացու պատասխանից:

- Ճանապարհը գյուղինը չէ, ճանապարհը թագավորինն է,- մի քայլ առաջ գալով խառնվում է նազիրը:- Ուրեմն՝ ոսկին էլ թագավորինն է:

Թագավորը ձեռքի շարժումով կարգադրում է լռել:

- Եթե քեզ տանեն շուկա ծախելու՝ քեզ մի ոսկի էլ տվող չի լինի,- դիմում է նա գյուղացուն:- Ինչո՞ւ որոշեցիր բաժանել ոսկին: Չէ՞ որ այն դու էիր գտել:

- Որովհետև աստծու տվածն էր: Թե չէ՝ ո՞վ ուներ այդքան ոսկի, որ գցեր ուղիղ ճանապարհի մեջտեղը: Իմ աստված՝ բոլորինն է:

- Իսկ ինչո՞ւ քեզ վերցրեցիր ամենից քիչ,- շարունակում է թագավորն իր հարցուփորձը:

- Ես վերցրեցի ինձ չորս ոսկի, որ լավ ապրեմ, իսկ հարևաններիս տվեցի հնգական, որ նրանք ինձանից լավ ապրեն:

Թագավորը զարմանքից քար է կտրում:

- Ինչո՞ւ,- նորից հարցնում է նա:

- Մեծ մնաս, թագավոր: Բա որ հարևաններս աղքատ լինեն՝ հարկ եղած դեպքում ումի՞ց գնանք բան ուզենք:

- Հը՜մ,- քթի տակ մռնչում է թագավորը:- Բա եթե ես կարիք ունենամ, ես ումի՞ց օգնություն ուզեմ: Հարևան թագավորի՞ց:

- Ո'չ, թագավոր: Թագավորներն իրար բան տվողը չեն,

իրար էլ հարևան չեն: Մենք ենք քո հարևանը: Մեզանից պիտի ուզես, քո ժողովրդից:

Թագավորը մատը կծում է ու կարգադրում նազիր-վեզիրներին սրանից հետո հրովարտակ գրել միայն ի շահ ժողովրդի, որ ժողովուրդն էլ հարուստ լինի, ինքն էլ: Իսկ գյուղացուն տալիս է տասը ոսկի և ուրախ-ուրախ ճանապարհում:

- Էլ ի՞նչ անի քո թագավորը,- բաժանվելիս հարցնում է արքան գյուղացուն:

- Քեզ նման թագավորը թող միշտ ապրած կենա,- պատասխանում է գյուղացին:

# ՍՐԱՓԸ

Մեկին աստված կանաչ ճամփա է տալիս, մյուսին՝ քարե կարկուտ: Լինում է, չի լինում՝ մեր աղքատ գյուղերից մեկում մի Սրափ անունով գյուղացի է լինում: Լույսը բացվում է՝ գնում է դատում, երեկոյան գալիս՝ սոված վեր ընկնում չոր թախտին: Արի ու այս երկրում ապրի:

Մի օր սա որոշում է կախվել: Վեր է կենում, գնում տերտերի մոտ, թե՝ տե'ր հայր, ես մի մթից մյուսը դառը դատում եմ, ծակ շալվարից դուրս չեմ գալիս, դու ու գյուղապետը սեղանի գլխին նստելուց բացի՝ ձեռքերդ չորից թացը չեք խփում, բայց ուտում, խմում, ման եք գալիս:

Տերտերը սրան նստեցնում է բակի քարի վրա, ինքը վեր է ընկնում փափուկ թախտին, ոտքերը դնում դեմը դրված կոճղին, տերողորմյան քաշելով, լսում է:

- Օրհնած,- մի վայրկյան մտածելուց հետո ասում է տերտերը:- Քո ասածը քո խելքի բանը չէ: Դու ուզում ես, որ առանց մարդ խաբելու, հեռու՝ մոտիկիդ շաշացնելու, դառը դատելով հարստանա՞ս: Գնա խելք հավաքի:

Սրափը սառը քարին նստած ճիպոտով դիմացի կեղտաջրի մեջ մի փայտի կտոր քշում է առաջ, քշում է հետ: Կամաց-կամաց սրա գլուխը խելք է գալիս՝ պայծա՞ռ, պայծա՞ռ:

- Քո ասածն է, տե'ր հայր,- աղաչում է գյուղացին,- մի

երկու մոմ տուր՝ վառեմ, աստված գա օգնության:

- Բա փո՞ղը, օրհնած,- ասում է տերտերը:

- Մոմը տուր, փողը քոնն է,- վիզը թեքելով պատասխանում է գյուղացին: Մոմը վերցնում է, տանում՝ խաչի դեմը վառում, իր աղոթքն անում, հեռանում է:

- Օրհնած, բա մոմիս գի՞նը,- զարմանում է տերտերը:

Գյուղացին շուռ է գալիս, թե գրպանուդ նայիր: Իրար ներս ու դուրս խոսքեր են ասում, կռվում-փռվում՝ բաժանվում: Սրափը հասկանում է, որ այսպես էլ կլինի:

Հաջորդ օրը Սրափը վեր է կենում, տեսնում է՝ էշը սոված զկրտում է: Գնում է գյուղապետի մոտ, մի քանի փութ գա-րի գնելու: Գյուղապետը դմակով բեղերը փայլեցրած դուրս է գալիս տնից: Լսում է Սրափին, ուրախանում է, որ ապրանքը գնվում է, գարին լցնում, դնում է Սրափի դեմը՝ դե փողս տո'ւր:

- Ի՞նչ եմ տալու,- հարցնում է Սրափը:

- Հաշվիր,- ասում է գյուղապետը:- Չորս փութ է, փութն էլ տասներեք շահի է, մենք էլ հո իրար բարեկամ ենք:

Սրափս հաշվում է տասնվեց շահի, տալիս է գյուղապետին:

Գյուղապետը հաշվում է, աչքերը թռցնում է ճակատը.

- Սա մի փթի գինը, տնաշեն: Բա մնացա՞ծը:

Սրափը պնդում է, թե ճիշտ է տվել.

- Տասներեք շահի մեկ փութը, մյուս երեք փութն էլ գու-

մարած՝ տասնվեց:

Տանուտերը մատների վրա աջից ձախ է հաշվում, հետո ձախից աջ, հաշիվը տեղը չի գալիս: Կանչում է մեծ տղային՝ Քոթոթին, գլխի մեջ՝ աշխարհի խելքը: Կանչում է Քոթոթին, թե՝ հաշիվն արա: Քոթոթը հորն ասում է, թե բազմապատկում-բաժանումը դեռ չի սովորել, բայց գումարում-հանումից իր պեսը չկա: Սրափը թուղթն ու մատիտը վերցնում է, տղայի աչքի դեմը չորս անգամ իրար տակ տասներեք է գրում, սկզբից երեքներն է գումարում, հետո սրանց գումարում է տասնյակների մեկերը, ստանում տասնվեց:

- Ճի՞շտ է, մեռնեմ խելքիդ,- հարցնում է Սրափը:

Քոթոթն ունքերը բարձրացնում՝ իջեցնում է, մի անգամ էլ ինքն է հաշվում, գլխով է անում, թե՝ ճիշտ է:

Սրափը գարին ցցում է սահնակին, ձին քշում գնում է, քթի տակ ծիծաղելով, թե՝ հայր ու տղա մի էշի գարու գին չիմախխցան: Ճամփին մի քաղաքացու է հանդիպում, որին գյուղ էին ուղարկել դատարկ հաշիվն[17] անելու:

- Քանի՞ մարդ է ապրում ձեր գյուղում,- խոսքի մեջ հարցնում է անծանոթը:

- Առա՞ջ, թե՞ հիմի,- հարցնում է Սրափը:

- Առաջ էլ, հիմի էլ,- պնդում է անծանոթն ու հանում մատյանը՝ գրանցի:

- Առաջ,- պատասխանում է Սրափը,- ապրում էր երկու

[17]Դատարկ հաշիվ (բրբ.) - մարդահամար:

մարդ՝ գյուղապետն ու տերտերը: Հիմա՝ երեքը. ես էլ ապրեցի:

չում, էլ չասենք քույր ու հորեղբոր տղաների մասին: Սրանք բոլորը ամբողջ կյանքում միայն իր, Վարդանի կարած գլխարկներն են կրել: Որոշում են տղային մի գլխարկ առնել: Էժան-էժան: Վարդանը սկսում է փորձել ամենափոքր գլխարկից: Մեկն է մտցնում տղայի գլխին՝ չի մտնում, փորձում է հաջորդը: Ի վերջո մի գլխարկ զոռով հագցնում է: Երեխայի դեմքը լարվածությունից կարմիր կարմրում է:

- Տեսա՞ր, ինչպես սազեց,- ուրախ-ուրախ ասում է Վարդանը,- գյուղ գնաց՝ գյուղի գլավա[20] կանեն:

Կտրիճ աղան դիտավորյալ ծանր շարժվելով հանում է քսակը՝ Վարդանին մի երկու աբբասի[21] տա գլխարկի համար:

- Ախպո'րս մանչը,- ասում է խանութպանը,- տվածդ բան չէ: Թելի գինն էլ չի հանում: Պիտի երեքը տաս: Տե'ս, տղադ ինչ տղա դարձավ. մեր պոլկովնիկի[22] աղջիկը տեսավ՝ աչքերի քունը կգնա:

Կտրիճ աղան ամոթխեղդ եղած, վճարում է երեք աբբասի և ուզում է հեռանալ Վարդանից, երբ մի բարձրահասակ, գեղեցիկ խանութպան հորն ու տղային կանչում է մի երկու բերան զրուցելու:

- Անուշ ախպո'րս մանչը,- սկսում է նոր խանութպանը,- սկզբից ասեմ, որ տուն գնացիր բոլոր գյուղացիներին

[20] Գլավա (ռուս.) - գյուղապետ:
[21] Աբբասի (պարսկ.) - պարսկական մանր դրամ:
[22] Պոլկովնիկ (ռուս.) - գնդապետ:

# ԾՈ, ՁԵՐ ՔԱՂԱՔԸ

Լինում է, չի լինում՝ Աբուլ սարի տակի գյուղերից մեկում մի աղա մարդ է լինում: Հարո՜ւստ, հարո՜ւստ: Որ կողմը նայես՝ իր գոմերն ու ախոռներն են: Անունն էլ Կտրիճ: Մի լավ օր Կտրիճ աղան ավագ տղային վերցնում է, նստում է մի սահնակ ու քշում դեպի Քաղաք. հա'մ Քաղաքը տեսնի, հա'մ տնեցիներին կարմիր լաչակ ու վարդագույն կոշիկ բերի: Գյուղում ծախում էին, բայց թանկ էր:

Ճաշին հասնում են, մտնում են շուկա: Է'հ, շուկա, թե շուկա: Հայերը խանութներում նստած մարդ են կանչում, վրացիները խնձորներով թասերը գլխներին դրած ժողովրդի մեջ վազվզում են, բոշաները ում բռնում՝ մաղերի գովքն են անում: Տեսնում՝ բերանը բաց է մնում:

- Ախպո՜րս մանչը[18], ախպո՜րս մանչը,- լսում է Կտրիճ աղան խանութպաններից մեկի ձայնը:- Արի տեսնեմ, ինչի՞ ես եկել: Ի՞նչ կա գյուղում, հորեղբայրս ինչպե՞ս է, ողջանձը[19] լա՞վ է:

Կտրիճ աղան շատ է զարմանում, թե այս մարդը իրեն որտեղի՞ց է ճանաչում:

Մոտենում է: Դուրս է գալիս, որ Վարդանը, խանութպանը, ոչ միայն իրեն, Կտրիճ աղային, այլ նաև Կտրիճ աղայի հորն ու պապին էլ է ճանաչում, պապի եղբորն էլ է ճանա-

---

[18]Մանչ (բրբ.) - տղա, որդի:
[19]Ողջանձ (բրբ.) - առողջություն, անձի ողջությունը:

առանձին-առանձին բարև կտանես: Կասես՝ Ներկարա-րենց մանչը շատ բարև ուղարկեց:

Խանութպանը փեշի տակից հանում է երկու կարամել կոնֆետ և տալիս երեխային:

- Ի՞նչ էիր ուզում առնել, ձեռքս որտեղի՞ց գցեմ պա-հեմ,- հարցնում է նա հյուրերին:

Կտրիճ աղան պատասխանում է:

Խանութպանն ասում է, որ կարմիր լաչակ կա, իսկ քա-ռասունհինգ համար կանացի կոշիկ կար, մի ոտք շուտ որ Կտրիճ աղան հասներ, կոշիկներն իրենն էին:

Կտրիճ աղան վերցնում է լաչակը, տեսնում, որ այն և' հին է, և' օգտագործված:

- Չեղա'վ, աղա' ջան,- լաչակը վերադարձնելով, ասում է Կտրիճ աղան,- սատկածդ ես սաղացնում[23]: Հա'մ հին է, հա'մ էլ շատ թանկ ես տալիս: Գյուղում նորն ավելի էժան է:

- Ախպո'րս մանչը,- առարկում է խանութպանը,- այս լա-չակը քո իմացած լաչակից չէ, որ էժան տամ: Հիմիկվա լա-չակներն այսպես են՝ արտակարգ որակի են, բայց հնի տեսք ունեն: Դու ի'նձ ականջ արա, վերցրո'ւ: Փող էլ չեմ ուզում:

Կտրիճն ականջները սրում է. ո՞նց թե փող էլ չեմ ուզում:

- Լսել եմ, ձեր գյուղացիները ջուր լավ են պնդացնում: Մի թաս ջուր պնդացրու՝ լաչակը քոնն է:

[23]Սատկածը սաղացնել (բրբ.) - անպետք մի բան տալ որպես պետքական:

- Ի՞նչ կա որ,- մտածում է Կտրիճը, չուզենալով գցել իրենց գյուղացիների պատիվը: Տրեխները հանում է, շալվարը մինչև ծնկները ծալում, թե՝ պատրաստ եմ:

Խանութպանը զարմանքից քարանում է, հետո բերում է թասով ջուրը, դնում Կտրիճի դիմաց: Կտրիճս մտնում է ջրի մեջ ու սկսում արագ-արագ տրորել:

Խանութպանը չի հավատում աչքերին, վազում է կողքի խանութները մարդկանց կանչելու, թե՝ եկեք-տեսեք, մի գյուղացի եմ բռնել՝ ջուր է պնդացնելու: Ժողովուրդը հավաքվում է, լցվում է ներս: Մեկ էլ տեսնում են, որ... Կտրիճը ոտքերը հազիվ է շարժում, այնքան ջուրը պնդացել է: Մնում են ապշած:

- Ա՛յ սարի գազան,- գոռում է խանութպանը,- ո՞նց պնդացրեցիր:

Կտրիճը ցույց է տալիս պատի հետ դրված ալրատոպրակը.

- Մի քիչ ալյուր խառնեցի, աղա՛ ջան, թե չէ՝ ինչպե՞ս պնդացնեի:

Խանութպանը հարձակվում է Կտրիճի վրա, թե՝ շո՛ւն շան որդի, այրո՛ւրս: Կտրիճը տրեխները վերցնում է, տղային գրկում և «Ծո՛, ձեր Քաղաքը» գոռալով պոկվում է դուրս: Հազիվ հասնում է ճամփաբաժան, առանց ճամփավարձը պայմանավորվելու նստում է առաջին պատահած սահնակը, հասնում է տուն: Պատմում էին, որ հետո նա խոս-

տովանել է, որ լավ է՝ գյուղացի տղա էր, թե չէ քաղաքացիք ծյունը տալու էին գլխին:

## ԱՄՈԹՈՎ ՄՆԱՑ

Լինում է, չի լինում` Ջավախքի մեջտեղում մի գյուղ է լինում` վերևը բաց, ներքևը` կանա՜չ-կանա՜չ խոտ: Այս գյուղի մեջտեղում մի մեծ տուն է լինում, սրա տիրոջ անունն էլ` Աղախան: Մի օր, դեկտեմբերի կեսերին, աստված շատ է նեղանում Ջավախքի ժողովրդից, ունեցած-չունեցած ձյունն ու բուքը թափում է գլխներին: Հենց այդ օրն Աղախանը տրեխները կապում է, չուխան հագնում, երեսնոցը քաշում երեսին, թե` գնում եմ Քաղաք, Քաղքի ժամում մոմ վառեմ: Տնեցիներն ուզում են հետ պահել, ասում են` ա'յ մարդ, քա՞ր ես կծել. ուղտի պարելը կամրջին է գալիս, վե'րջ տուր, մի լավ օր կգնաս: Աղախանը նեղանում է, թե` լավ օրն ով ասես ժամ կգնա, իսկ աստծու մշակը եկեղեցի բուք օրն էլ է գնում: Կռվում-փռվում են, բայց հո Աղախանն Աղախան է: Լավ է, ծին մի քանի անգամ Քաղաք գնացած-եկած է լինում, ճամփան չի կորցնում: Հասնում են:

Աղախանն իր ծեսով մտնում է եկեղեցի, մոմ է վառում, տերտերին երկու շահի է տալիս` աղոթք ասի, երեսին խաչ հանելով դուրս է գալիս եկեղեցուց: Ճանապարհին մտնում է շուկա` կնոջն ու երեխաներին խնձոր առնի, հիշում է, որ սոված է, թեյարանի դուռը բաց է անում, մտնում ներս:

- Հա՜յ, սուլթան ախպարս եկավ,- բարձր-բարձր ձայնով, ձեռքերը փռած դեմ է վազում մի կերած-խմած երիտասարդ:- Ինչ ժամանակին եկար: Այս տաս շահին վերց-

րու, Արդահանցոնց տունը թուք են բերել, գնա մի քքոց[24] բեր, անուշ անենք:

Աղախանն առանց մի բան հասկանալու, փողը վերցնում է ու պոկվում դեպի Արդահանցոնց տունը: Բուքը խեղդում է, բայց Աղախանը գլուխը կորցրած՝ շտապում է, հանկարծ տղաները չգնան. քաղաքում ախպար ունեցողը գյուղում ահագին մարդ է: Շնչակտուր հասնում է Արդահանցոնց տունը:

- Թուքն ո՞ւր է:

Այս մարդիկ զարմանում են, թե՝ ձմեռվա կեսին ի՞նչ թուք: Հետո լրջանում են, ասում.

- Եղբայր ջան, մի ոտք շուտ գայիր՝ այստեղ էր: Քարե ճամփով գնա՝ կհասնես:

Աղախանը պոկվում է առաջ, հասնում փողոցի անկյունը՝ թուք չկա: Հարցուփորձ է անում, ասում են.

- Մի ոտք առաջ այստեղ էր, այս կողմ վազիր՝ կհասնես:

Մի քանի անգամ նույն տեղում սրան տեսնելուց հետո՝ բոշա Տոնիկի ճարը կտրվում է, ասում է.

- Հո'ս ախպարը, տուն գնա: Թուքը հենց նոր ձեր գյուղ տարան:

Աղախանը հոգոց է հանում, բայց ի՞նչ անի: Գլուխը կախ գալիս է թեյարան, թե՝ դուք ու ձեր աստվածը, թուքը, ասում են, մեր գյուղն են տարել:

- Հա,- ասում է լավ տղաներից մեկը,- լավ են արել: Ձեր

[24] Քքոց (բրբ.) - ծղոտե աման:

գյուղում, կա-չկա, թութը դեկտեմբերին է հասնում: Այս տաս շահին ու քթոցը տար: Թութ կառնես, մի բերան էլ մեր տեղը կուտես:

Աղախանը փողն ու քթոցն առնում՝ ճամփա է ընկնում, իրեն-իրեն մտածելով.

- Թութն ի՞նչ էր, որ չհասա: Ափսոս, տղաների մոտ ամոթով մնացի:

## ԱՇԽԱՐՀԲԵԿԸ

Լինում է, չի լինում՝ մեր Քաղաքում մի լավ դարբին է լինում՝ Աշխարհբեկ անունով: Սա իր կնոջ՝ Միշկինազի հետ կարգ ու վարքով, սիրով ու նամուսով ապրում է հիսուն տարի: Հիսուներորդ տարվա հիսուներորդ օրն այս կրակին տված կինը երեկոյան քնում է՝ առավոտը չի արթնանում՝ մեռնում է: Լաց ու կոծով, դհոլ-զուռնով, ճաղատ տերտերով, ծեսով, շնորհքով Միշկինազին տանում են առոք-փառոք հանձնում հողին: Է'հ, հարևանբարեկամ գալիս են, քելեխն ուտում, համբերություն են ցանկանում, համարում են պարտքերը կատարած՝ անցնում են իրենց ծանր գործերին:

Հաջորդ օրը դարբինը քելեխի հացից մնացած մի կտոր դնում է բերանը՝ հարևան կանանց փեշերին նայելով գնում է դարբնոց: Նոր է կրակը վառում, որ երկաթը տաքացնի, ներս է մտնում մի հագած-կապած, թշերը կարմիր տղամարդ: Չուխան հանում է, նստում է Աշխարհբեկի կողքը, թե՝ հորեղբայր, ես Քաղաքից եմ, անունս էլ Սիմոն է, մեծ գործ ունեմ հետդ, պետք է նստենք, զրուցենք: Աշխարհբեկն ասում է, թե՝ ախպո'րս մանչը, աստված ինչ գործ տվել է, բոլորը հորով-մորով եմ արել, բայց հիմա սիրտս տեղը չէ: Խոսում, ասում են, Սիմոնը լսում է դարբնի դարդ ու ցավը, հոգին փափկում է:

- Է՜հ,- ասում է,- հորեղբա'յր, դարդ մի' արա: Դրանից էլ

վատ ցավ կա: Բա որ, աստված հեռու պահի, երեխաներից մի բան պատահե՞ր: Յոթանասունին մոտ կին էր, աստված ուզել` տարել է: Աստծու կամքն է: Մեռնեմ սրբությանը: Ողորմի նրան: Բայց հո մեռնողի հետ չեն մեռնում:

- Բա, մի կաքկեր, բալա ջան, որտեղի՞ց ճարենք,- դեմքը մոտեցնելով Սիմոնին ասում է ծերունկը:- Մենք էլ հնսան ենք:

- Չվախենա'ս,- ոգևորում է Սիմոնը:- Մի լավ կաքկերի տեղ գիտեմ: Ձահել, ջիվան, թամ-թազա[25]: Տեսնես` պառավիդ կմոռանաս: Ուզում ես` մի շիշ օղի վերցրու, մի տոպրակ էլ ղաուրմա: Գնանք սիրտն առնենք:

Աշխարհբեկը տաքանում է.

- Ճի՞շտ ես ասում, բալա ջան: Կաքկե՞ր է:

- Պուտըմ ջուր,- աչքերը վառելով պատասխանում է Սիմոնը, կարծես ինքն էր գնալու կարագի[26]:

Աշխարհբեկն օղին ու ղաուրման վերցնում է, գնում են կաքկերի սիրտն առնելու:

Սիմոնն ուղիղ տանում է իր տունը, կնոջը կարգադրում է հաց-մաց սարքել, սեղան դնել: Մինչև լվացվելն ու հացի նստելը Սիմոնը քչփչում է իր նոր բարեկամին, թե կաքկերն այս կինն է: Դարբինը հենց լսում է` խելքը տեղ է անում:

- Հա', բալա ջան, աստված սևդ կանաչ անի: Ի՜նչ կնիկ է, ջեյրա'ն, մի աչքի լույս:

[25]Թամ-թազա (թուրք.) - բոլորովին նոր:
[26]Կարագ (բրբ.) - երկրորդ ամուսնություն:

Նստում են, դարբնի օղին խմում են, դաւրման քաշում փորերը, քեֆերը լավանում է: Երեկոյան Աշխարհբեկին ճամփա են գցում:

- Ի՞նչ ես ասում,- հարցնում է Սիմոնը:- Կաքկերին տանո՞ւմ ես:

- Ախպո՛րս մանչը,- աղաչում է Աշխարհբեկը:- Ո՞նց կտանեի: Բայց մենք էլ հո էգ ու որձի տերենք: Քառասունքն անցնի՝ կտանեմ:

Սրանով համաձայնում են, գնում են իրենց գործին:

Հաջորդ օրը դարբինը դարբնոցում թռվռում է, սպասում է, թե ե՞րբ պիտի ախպորը մանչը գա՝ կաքկերից լուր բերի, գոնե անունն իմանա: Բայց Սիմոնը չի գալիս: Մի քանի օրից Քաղաքի մեջտեղում Սիմոնին գտնում է:

- Ախպո՛րս մանչը,- աղաչում է Աշխարհբեկը,- կաքկերն ինչպե՞ս է: Չգնա՞նք սիրտն առնենք:

- Է՛հ, գնա՛նք,- ասում է Սիմոնը:

Աշխարհբեկը մի շիշ օղի է վերցնում, մի հինգ-վեց ոչխարի խաշած գլուխ, գնում են ուղիղ Սիմոնենց տուն:

Կինը, բանից անտեղյակ, ձեռքերին ջուր է լցնում, հաց է սարքում, սեղան դնում ու զարմանքով հետևում է, թե օրն ապրած այս մարդը ինչո՞ւ է իրեն խաս քավորի աչքերով նայում:

Ուտել-խմելուց հետո դարբնին ճամփա են գցում:

- Է՛հ, կաքկերին կտանե՞ս,- նորից հարցնում է Սիմոնը:

- Չէ', բալա' ջան, քառասունքին բան չմնաց: Քառասունքն անեմ ու տանեմ. ես էլ էգ ու որձի տեր եմ:

Մինչև քառասունքը Աշխարհբեկը «ախպորը մանչուն» մի երկու անգամ էլ դարբնոցում է պատիվ տալիս: Աշխարհով եղած բան է: Սիմոնը տեսնում է, որ բանը բանից անցնում է, էլ դարբնոց չի գալիս, դարբինն էլ ընկած քառասունքով, Սիմոնին աչքաթող է անում: Օրը գալիս է, քառասունքն անում են: Քառասունքի հաջորդ օրը Աշխարհբեկը գալիս է կաթկերին տանելու: Վերև Սիմոն, ներքև Սիմոն, շուկայի մեջտեղում բռնում է:

- Սիմո'ն ջան, եկել եմ կաթկերին տանեմ:

Սիմոնն աչքերը բացում է, հետո փակում, հետո ուշքի է գալիս:

- Ա՜յ Աշխարհբեկ, վա՜յ Աշխարհբեկ: Երկաթը տաք-տաք են ծեծում: Սա հո դու ինձանից լավ գիտես: Ասի՝ առ ու տար:

Ծերուկը, որ Սիմոնին լսում է, բերանը չորանում է:

- Բալա' ջան,- հազիվ շունչ քաշելով ասում է նա,- խոմ կաթկերն էլ չի՞ մեռել: Իմ ճակատի գիրը մենակ սևով է գրվա՞ծ:

- Ծո, ո՞ւր է,- ձեռքերն իրար խփելով, պատասխանում է Սիմոնը:- Երեկ, առանց հոր ու մոր հարցնելու՝ թողել հարևանի հետ փախել է Արդահան: Կայծակի տված կանանց մեջ ո'չ ահ կա, ո'չ ամոթ: Որ տեղը փափուկ տեսան՝ փեշերը

վերև են քաշում:

Աշխարհբեկի սիրտը կանգնում է. բա' այդ ջեյրան կինը, բա' այդքան ղաուրման: Վա՜յ սևին գայիր, պառավ, մեռնել՝ մեռնել էր, մի օր շուտ չէի՞ր կարող մեռնել՝ քառասունքդ շուտ անեինք...

Սերն, ասում են, սիրուն է, հույսն էլ՝ կյանք է: Սիմոնը համոզում է ծերուկին, որ մի ուրիշ կաթկերի տեղ էլ գիտե, պառավի տարին անցնի՝ կգնան կուզեն: Մի երկու շիշ օղի, մի երկու պարկ ղաուրմա է, էլի: Ի՞նչ մի ծանր գործ է կին ուզելը:

Ափսո՛ս, ծերուկը պառավի տարուց մի օր առաջ մահանում է, մուրազը՝ փորը: Ինքն էլ է պրծնում, Սիմոնն էլ: Բա', որ ասում են՝ կնոջդ լավ պահի՝ ինքն աչքերդ փակի, առանց իրեն լույս չտեսնես: Երևի այս պատմությունը լսել են:

# ԱՍՏԾՈՒ ԿԱՄՔՈՎ

Կարկտի տարվա նախորդ տարին Ջավախքում հրաշք էր: Գիշերներն անձրև, ցերեկները՝ վառ արև: Դաշտերում քարերն էլ էին կանաչել ու ծաղկել: Գյուղացիները կովն ու ոչխարը հա ավելացնում էին, բայց էլի տեղ կար:

Օգոստոսի կեսերին, առավոտյան լույսը չբացված, մի գյուղացի գերանդին շալակում է, գնում է խոտ հնձելու: Յակառակի պես հանդիպում է դիմացի թաղից մեկ ուրիշ գյուղացու: Սա էլ է գնում խոտ հնձելու: Խոսում են անասունից, խոտից, տարվա բերքից, հասնում են տան երդիկին ու տնեցիների շորերին, որոշում, որ այսպես որ գնաց, մինչև գարուն ահագին յուղ ու պանիր կլինի, կտանեն կծախեն՝ ընտանիքները ծակ շորերից կհանեն:

- Աստված հայ ժողովրդին լավ է նայում: Աստծու կամքն է՝ լավ կլինի,- ասում է մեկը:

- Աստված ի՞նչ կապ ունի, ա՛յ կիսատ,- զարմանում է մյուսը:- Տարին թագավորն է տալիս: Թագավորը որ չուզեր, բա այս գիշեր անձրև կգա՞ր: Ամեն բան թագավորի ձեռքն է:

Սկսում են վիճել: Մեկն ասում է «Աստծուն փառք», մյուսը՝ «Թագավորն ապրած կենա»: Գերանդիները խփում են գետին, գալիս են տերտերի մոտ, տեսնեն՝ տերտերն ի՞նչ կասի:

Տերտերն երկուսի երեսին էլ խաչ է հանում, նստեցնում է դեմը, դիմում է մեկին.

- Լսում եմ, օրհնած:

Գյուղացին դունչը բարձրացնում է, մի խաչ էլ ինքն է երեսին հանում ու ասում.

- Տե՛ր հայր: Մյուս երկրներում՝ չգիտեմ, բայց Հայոց աշխարհում ամեն բան աստված է ստեղծել: Գիտեմ, որ այս տարվա լի ու առատ գարունն էլ է աստված նվիրել: Թե չէ, ո՞ւմ ճարն էր կտրել՝ մեզ այսքան խոտ տար:

- Ապրե՛ս,- որոշում է տերտերը:- Ինչ ասում ես՝ ճիշտ ու շիտակ է:

- Ինչպե՞ս,- խառնվում է մյուս գյուղացին:- Թագավորն ապրած կենա: Թագավորը որ խռովեց, արևն էլ կմարի, արտն էլ կչորանա: Բա ինչո՞ւ Բաքումում կարկուտ է եկել: Նույն աստվածը չէ՞: Դե թող ձեռքը դեմ պահեր:

Տերտերը որ լսում է թագավորի անունը, բերանը չորանում է:

- Ապրե՛ս,- ասում է նա երկրորդ գյուղացուն:- Ինչ ասում ես՝ ճիշտ ու շիտակ է:

- Ա՛յ տեր հայր,- զարմացած հարցնում են գյուղացիները,- հիմա ո՞րս ենք ճիշտ: Երկուսիս ասածն էլ ասում ես շիտակ է: Հա՛մ նալին ես խփում, հա՛մ մեխին:

Տերտերը տերողորմյայի քարերն առջևից հետ է հաշվում, հետո հետևից՝ առաջ, տեսնում է՝ հաշիվը տեղը չի գա-

լիս: Ասի, թե թագավորն է տվել, բա աստվա՞ծ: Ասի, թե աստված է տվել, թագավորն իմացավ... Ասում է.

- Այսօր գործերով զբաղվեցեք, առավոտյան կգաք, կասեմ:

Հաջորդ օրը լույսը չբացված գյուղացիները թակում են եկեղեցու դարպասը:

Տերտերը բացում է, տեսնում է՝ նույն գյուղացիներն են: Մորուքը դզում է, կրծքի վրայի խաչն ուղղում, նայում է մի գյուղացուն, հետո՝ մյուսին, մատը տնկում՝ պատասխանում է.

- Ինչ կա՝ թագավորի ձեռքն է: Սա՝ հաստատ է: Կամքն էլ՝ աստծունն է: Սա էլ հաստատ է: Այնպես որ ամեն ինչն արքայի ձեռքով ու աստծու կամքով է: Մնացածը մնում է ձեզ:

Գյուղացիները լսում են. մարդը ճիշտ է ասում: Իրենց էլ մնում է գնան՝ խոտը հնձեն: Իրար երես են նայում, թեքվում ու գնում են իրենց գործին:

## ՎՃԻՌԸ

Մեր Ջավախքի կանաչ դաշտերից մեկում մի պարզ ու մաքուր լիճ կա: Մի շոգ օր սարի ավազակներից մեկն անցնում է լճի կողքով, ջուրը տեսնում՝ միտքը փոխում է: Որոշում է լողանալ: Մտնում է խորը, որ հովանա: Այդ րոպեին մի անտեր շուն վազում է դեպի ավազակի շորերը, հոտ է քաշում, երևի արյան հոտ է առնում, վերցնում է բերանն ու տանում: Ավազակը տեսնում է, վազում է դուրս, որ շանը բռնի: Սատանան ոտքից պինդ քաշում, տանում է փոս տեղ: Խեղճը փորձում է հետ գալ, բայց ո՞ւր. սատանայի բռնածը բռնած է:

Սկսում է խեղդվել: Լավ է, աստված հասնում է: Բախտի բերմամբ, թա պատահմամբ, այդ ժամանակ լճի կողքով մի խեղճ հովիվ է անցնում՝ մի դատարկ տոպրակ ուսին: Տեսնում է՝ մարդ է խեղդվում, մտածում է՝ ինսան է, օգնեմ: Փայտը երկար գցում է դեպի խեղդվողը, քաշում հանում է դուրս:

Մի քանի րոպեից ավազակն ուշքի է գալիս, բռնում է հովիվի ականջից, թե՝ շունը ձեր գյուղից էր, շորերդ տուր:

- Ա'յ անաստված,- աղաչում է հովիվը:- Սա՞ է քո շնորհքը. նոր եմ ջրից հանել, մարմնիդ թացը դեռ չի չորացել:

Վիճում են, կռիվ անում, հետո ավազակը հովվի տոպրակը քաշում է տկլոր մարմնին՝ գնում են դատավորի մոտ:

Դատավորը նստում է իր բարձր թախտին, կշեռքը

դնում է դեմը, աչքերը կապում է, աջ ձեռքը դնում է բաց Աստվածաշնչին, դիմում է հովվին.

- Ասա:

Հովիվն ասում է, ինչպես որ ձեզ պատմեցի:

Դատավորը վերցնում է մի քար, գցում է կշեռքի մի թաթին: Դիմում է ավազակին, թե՝ հիմա էլ դու ասա:

Ավազակն էլ իրենն է ասում: Դատավորը մի քար էլ գցում է մյուս թաթին: Կշեռքը օրորվում, գալիս՝ հավասար կանգնում է:

- Չեղա՛վ, է՜,- խորը հոգոց հանելուց հետո, եզրակացնում է դատավորը:- Ձեր ասածից բան չեմ հասկանում: Վճիռ կայացնելու համար պետք է գնանք դեպքի վայր, իմ աչքերով տեսնեմ եղած-չեղածը:

Այդպես էլ անում են: Գնում, գնում, հասնում են տեղ:

- Դու մտիր ջուրը՝ խեղդվիր,- դիմում է դատավորն ավազակին:

Ավազակը վրայի տոպրակը հանում է ու մտնում խորքը, սկսում է խեղդվել:

Հովիվն ուզում է փայտը գցել, որ ավազակին հանի, դատավորը ձեռքը մեկնում, կանգնեցնում է:

- Մարդ չէ,- ասում է նա հովվին:- Նամարդ մարդու տեղն էլ սա է:

Սրանով համաձայնում են, ավազակին թողնում գնում են Քաղաք:

Յովիվն ուրախացած դիմում է դատավորին, թե՝ աղա' ջան, ի՞նչ անեմ, որ լավությանդ տակից դուրս գամ:

- Առանձնապես ոչ մի բան,- ասում է դատավորը:- Վաղը երեխայի հետ մի երկու փութ ցորեն կուղարկես, սրանով կպրծնես:

Յովիվը որ լսում է, սիրտը կանգնում է:

- Ա'յ աղա ջան,- ողբում է նա:- Քո ուզածն այն հոգևորի ուզածի երկուսն է: Ես էլ սովից ցերեկով եմ անկողին մտնում[27]:

Վիճելով հասնում են գետին, որը պետք է կտրեն հասնեն Քաղաք: Անցնում են բարակ գերանի վրայով:

- Տեսնես աստված կա՞,- մտածում է հովիվը: Յենց այդ պահին դատավորը սայթաքում է ու գլուխկոնծի ընկնում ջուրը:

- Ա'յ տղա, փայտդ տո՜ւր,- ոռնում է նա:

- Ո՞ւր տամ: Մա'րդ չես,- ասում է հովիվը:- Նամարդ մարդու տեղն էլ սա է:

Արագ անցնում է գետն ու հեռանում:

[27]Սովից ցերեկով անկողմին մտնել (դարձ.) - կիսասոված ապրել, երեկոյան շուտ մտնել անկողին, որպեսզի չընթրել:

## ԿԻՐՈՆ

Լինում է, չի լինում՝ մեր քավոր Աղասու գյուղում մի ինսան է լինում, անունն էլ՝ Կիրակոս: Գյուղի անունն էլ... չգիտեմ. գյուղը Կիրոյենց էին ասում:

Կիրոն աստծու տված բանը սիրում էր, մենակ մի բան չէր սիրում՝ աշխատել:

- Աշխատելն էշի բան է,- ասում էր Կիրոն գյուղամիջում նստած՝ ոչլոտ ծոծրակը քորելով:- Էշից շատ բանող չկա՝ չորացած յոնջան խնայելով է ուտում: Դատելով լիներ՝ հիմա մեր քուռակը թուրքի սուլթան էր:

Մի օր, երբ Աբուլ սարի ամպերի տակից նոր էր սկսել կաթկթել, Կիրոյի սիրտը թանով ապուր է քաշում: Սա թոռանն ասում է, թե՝ գնա տատիդ ասա՝ մի կարգին թանով ապուր եփի՝ ուտենք, օրն անցավ: Թոռը միամիտ-միամիտ գնում, տատին ասում է այն նեղ րոպեին, երբ խեղճ կինը նոր էր կովի տակից դուրս եկել: Տատը հարձակվում է Կիրոյի վրա, թե՝ դու ո՞ր օրվա տղամարդն ես, որ հրաման ես արձակում: Ի՞նչ ես դատել, որ ինչ էլ ուզում ես ուտել: Եղանը քաշում է՝ վե'ր կաց ու գնա:

Կիրոն գնդակի պես թախտից թռչում է, շալվարը ձեռքով պահում՝ չընկնի, բոբիկ պոկվում է դուրս: Անձրևը որ ուժեղանում է՝ Կիրոն մտնում է աթարի դեզի մեջ: Տեսնում է իրեն փնտրող չկա, բայց տուն գնալ էլ վախենում է. կնիկը ցախավել է հեծել, եղանը բրդեց՝ բրդեց: Նստած սպասում

է, դրա հետ էլ խորը միտք է անում, թե՝ տեսնես, որ կանայք այսքան զոռ են տվել, մեր Հայոց աշխարհի բանն ի՞նչ է լինելու, որ վաղը գնա գյուղի մեջտեղում իր ասածն ասի: Ձեռքով թրիքը տրորում է, մանր-մանր փոշի անում, մի ափից լցնում է մյուսը:

Նույն րոպեին թոռը գալիս է, թե՝ պապի՛, այս աթարի դեզում ի՞նչ ես անում: Կիրո թե Կիրո, վեր կաց ու ասա.

- Գործ եմ անում:

- Ի՞նչ գործ, ա'յ պապի:

Կիրոն դեմքը սրում է, թե՝ մկան դեղ եմ պատրաստում:

Թոռը պոկվում է տատի մոտ, կանչելով.

- Տատի' ջան, մկներից պրծանք:

- Ինչպե՞ս,- զարմանում է տատը:

- Բա՜, չգիտե՞ս, պապին մկան դեղ է պատրաստում:

Գալիս հավաքվում են աթարի տակ, Կիրոյին բոթում են: Կիրոն ամոթից ասում է.

- Սարքել եմ: Սա է, որ կա:

Թրիքի փոշին լցնում են տոպրակները, տալիս են թոռան շալակը, թե՝ տար ծախի:

Է'հ, մի Ջավախք, հազար ու մի մուկ: Ամեն մեկի ամբարում ցորենից շատ մուկ կա: Հենց Կիրոյի թոռանը լսում են, իրար տալով գալիս՝ դեղը ցորենով ու գարով փոխում, տանում են: Վերջին առնողին բան չի մնում: Գլխարկը խփում է գետին, թե՝ մարդ բախտ պիտի ունենա. մկան դեղն էլ չհա-

սավ: Մյուսը թե՝ այդ մեկը ոչինչ, բայց այս դեղն ի՞նչ ենք անելու: Կպչում են Կիրոյի թոռանը: Թոռը ցորենն ու գարին առած՝ պոկվում է տուն, հասնում է պապին: Պապը լսելով՝ իրեն կորցնում է, հետո նայում է թոռանը, թե՝ գնա ասա', թող դեղը ցանեն ամբարների տակ, բայց բարակ չցանեն: Մուկը որ կերավ, էգը որձ կդառնա, ցեղն էլ կկտրվի:

Թոռը գնում է, մազը հասցնում կրակին: Գյուղացիները մտածում են, ծոծրակները քորում, որոշում են, որ սա էլ մի բան է. տեսար՝ մի տարուց հետո մկներից պրծանք:

Մի քանի օր հետո մկան դեղ ցանողները տեսնում են, որ խաբվել են: Ամոթից գյուղամիջին կանգնում ասում են, թե՝ մկան թիվը պակասել է:

Կիրոն լսում՝ հավատում է: Մատը դնում է ճակատին.

- Մեռնե'մ խելքիդ, Կիրո' ջան: Էշի թրիքից էլ ես մկան դեղ սարքում: Բա չէ', մեր ցախավելը հեծած պառավը: Գի-տե՝ կով կթելով կապրես:

# ԿԱՐՄԻՐ ՇԱԼՎԱՐԸ

Ով հուրի-փերի չի տեսել՝ թող գնա Փարվանա: Փարվանայի ջրերում լողացած աղջիկները և՛ հուրի են, և՛ փերի:

Մի խորենացի[28] որոշում է տղային սիրուն հարս բերել: Հիշում է, որ լճափնյա գյուղերից մեկում մի լավ բարեկամ ունի, վեր է կենում, եղբորն ու աներոջը վերցնում, տղային սպիտակ շապիկ հագցնում, տանում է Փարվանա:

Ճանապարհի կեսին քամի է բարձրանում, անձրև է տեղում, հետո անձրևը փոխվում է կարկուտի: Որոշում են մտնել մոտակա գյուղը, ճաշել, հետո էլ՝ աստված ողորմած է:

Մտնում են մի լավ տուն: Է՛հ, հայի տանը հյուրն աստծուն է: Տանտերը կնոջը նշան է տալիս, թե՝ հաց բեր: Ծանոթանում են, ասում-լսում, տեսնում են՝ մի սպիտակ դեմքով, երկար մազերով, մեծ-մեծ աչքերով աղջիկ դռան մոտ կանգնած սպասում է՝ եթե պետք է, հյուրերին պաղ ջուր բերի: Նայում են՝ մի ջեյրան: Իրենց տղայի անունը Կարեն, այս աղջկանը՝ Կարինե: Կանգնեցնում են իրար կողք. մի խնձոր՝ մեջտեղից կիսած: Սրանից լավը չկա. աստծու կամքն է:

Մի քեֆը դարձնում են երկուս: Մատանին հագցնում են սպիտակ օրհորդի մատը, հարսն ու փեսին կողք կողքի նստեցնում, մի տարի հետո էլ գալիս, տուն են տանում:

[28]Խորենացի - Ջավախքի Խորենյա գյուղի բնակիչ:

Առաջին օրը հարսն ու փեսան փաթաթվում տաք-տաք քնում են, առավոտյան կինը վեր է կենում, թե՝ դու ո՞վ ես, դեմքիդ գույնին շուն չեմ պահի[29]: Ամուսինը զարմանում է, թե՝ քեզ ի՞նչ եղավ, ա'յ թոկից փախած: Է'հ, որ ասաց՝ ի՞նչ: Կինը դրվածքը դնում է ու զոռում: Ահա քեզ հուրի ու փերի:

- Ի՞նչ անեմ,- մտածում է ամուսինը:- Կատու չէ՝ շների բերանը տամ, շուն չէ՝ տանեմ կորցնեմ:

Անցնում է մի քանի ամիս: Մի օր ամուսինն ուշ երեկոյան գալիս է տուն, տրեխները հանում, սպասում է, թե կինը պետք է ջուր բերի, ոտքերը լվանա: Մեկ էլ կինը գալիս է, ոտքը խփում է գետին, թե՝ քեզ թանով ապուրն էլ շատ է: Վաղը պետք է Քաղաք գնանք, ինձ կարմիր շալվար գնենք: Մյուս օրը էրիշտի[30] օր է, բա ես կարմիր շալվար չհագնե՞մ:

- Տե՜ր աստված,- մտածում է խեղճ ամուսինը:- Կալը կուտը՝ տատի, պապի հարսանիքը[31]: Իմ վարն ու ցանքը՝ սրա կարմիր շալվարը:

- Ա'յ կնիկ,- ողբում է ամուսինը:- Քա՞ր ես կծել: Ցորենը ցանել ենք, փոցխ չենք արել: Ծիտը կերավ՝ աշնանն առանց հացի կմնանք:

- Որ կարմիր շալվար չունեցա, հացն ինչի՞ս է պետք:

Որոշում են առավոտյան մեկնել:

Ամուսինը գնում է հարևանի մոտ, թե՝ վաղն առավոտ-

---

[29] Դեմքի գույնին շուն չպահել (դարձ.) - արհամարհել:

[30] Էրիշտա - բարակ շերտերով կտրված հաց, որը չորացնելուց հետո բովում են, ձմեռվա ընթացքում յուղով եփում և օգտագործում որպես ճաշ, ճաշատեսակ:

[31] Կալը կուտը՝ տատի, պապի հարսանիքը (դարձ.) - ծանր գործերի մեջ՝ անիմաստ զբաղմունք:

յան ցլիկդ ե՞րբ ես ջուրը տանում[32]: Հարևանն ասում է:

- Ինձ բերան չտաս[33],- խնդրում է կրակն ընկած ամուսինը:- Բայց վաղն ինչ լինի՝ տեղից չշարժվես:

Առավոտյան մարդ ու կին սիրով ու կարգով նախաճաշում են, հագնում ու կապում, որ գնան Քաղաք: Ամուսինն ասում է.

- Ա'յ աղջիկ, չեղավ: Կարմիր շալվարի գնացողը կարմիր շալ է կապում:

Կինը սնդուկից մոր նվիրած կարմիր շալը հանում է, կապում, ամուսնու հետևից ընկնում է ճանապարհ:

Երբ սրանք անցնում են գետի կողքով, հարևանի ցլիկը ալ կարմիր շալից գժվում է ու ընկնում հարսի հետևից: Հարսը գոռում է ու փախչում, ինքն առջևից, ցլիկը՝ հետևից: Խեղճ կինը տեսնում է ճար չկա, մտնում է գետը, մինչև գոտկատեղը կանգնում սառը ջրի մեջ:

- Ա'յ տղա,- գոռում է նա ամուսնուն,- նախագահին կանչի'ր, ցլիկը քշեն:

- Չեմ կարող,- ասում է ամուսինը:

- Ինչո՞ւ:

- Նախագահի շալվարը կարմիր է:

Վերջը՝ երկար-բարակ խոսելուց հետո հարսին հանում են, տանում տուն, թոնիր են նստեցնում, որ ուշքի գա: Ամուսինն էլ գնում է, իր փոցխն անում, երեկոյան վերադառնում

[32](Անասունը) ջուրը տանել (բրբ.) - տանել անասունը ջուր խմելու:
[33]Ինչ-որ մեկին բերան տալ (բրբ.) - մատնել:

է տուն:

Չաջորդ օրն առավոտյան նա հարցնում է կնոջը.

- Կնի'կ, բա կարմիր շալվարի չգնա՞նք:

- Չէ',- վախեցած պատասխանում է կինը:- Թաղեմ կարմիր շալվարը, մեռնելու էի:

Ամուսինը մատը կծում է, թե՝ ես սրան վաղուց պետք է պաղ ջրի մեջ պահեի:

# ՆԱԶԱՐՆ ՈՒ ՂԱԶԱՐԸ

Լինում է, չի լինում՝ բա՜րձր-բա՜րձր լեռներում, բաց երկնքի տակ մի խեղճ ու կրակ գյուղ է լինում: Գոմերում շներն էին վազվզում, ամբարներում՝ մկները: Գյուղում ընդամենը երկու եզ է եղել՝ մեկը Նազարինը, մյուսը՝ Ղազարինը:

Ամեն տարի գարունն այս գյուղ է մտել ապրիլի կեսերին: Այս տարի բանը հասնում է մայիսի կեսերին, բայց ձյունը դեռ չի հալչում: Գյուղում ժողով են կանչում՝ իրենց աղաներին՝ Նազարին ու Ղազարին ուղարկեն Քաղաք, տեսնեն Քաղաքում ի՞նչ են ասում, այս տարի գարուն գալու է, թե՝ ոչ:

Նազարն ու Ղազարը գնում են տուն, հաց ու պանիր վերցնում, տաք շոր են հագնում, հանդիպում են իրար ու կամաց-կամաց իջնում սարից: Հասնում են առաջին աղբյուրին: Ղազարն առաջարկում է մի-մի բերան հաց ուտել:

Մի քար են գտնում: Գլորում-տանում են աղբյուրի մոտ, Ղազարը սպիտակ շորը հանում փռում է քարին, Նազարը հացն ու պանիրն է հանում, կուշտ-կուշտ ուտում են: Վերջը՝ թարմ օդ էր: Կշտանալուց հետո Նազարը մնացած հացը տալիս է թռչուններին, Ղազարը սպիտակ շորը հավաքում է, ճանապարհը շարունակում են:

Հասնում են երկրորդ աղբյուրին: Նազարն առաջարկում է մի-մի բերան հաց ուտել: Նորից քար են գտնում, Ղազարը վրան սպիտակ շոր է գցում, հացը հանում, սկսում է

ուտել: Նազարն էլ է ուզում ուտել, բայց Ղազարը ձայն չի հանում:

- Այ Ղազա՞ր,- հարցնում է Նազարը,- իմ հացը միասին կերանք, քոնը միայնա՞կ ես ուտում:

- Ճիշտ ես ասում,- հաստատում է Ղազարը,- բայց իմ հացը քիչ է երկուսիս համար: Փոր խաբելն էլ մի բան չէ: Ավելի լավ չէ՞ մեկս սոված մնա, քան՝ երկուսս:

Նազարը դատարկ թուքը կուլ է տալիս, լռում է:

Ղազարը լավ ուտում, կշտանում է, մնացած հացը փաթաթում է սպիտակ շորի մեջ, դնում է խուրջինը: Առանց իրար նայելու ընկերները ճանապարհը շարունակում են:

Մինչև իջնում են Քաղաք՝ գարունը գալիս է: Փարվանան սառը ջրերով լցված կտրում է Նազարի ու Ղազարի ճանապարհը: Նազարն առաջարկում է հետ գնալ, քանի որ գարունն արդեն եկավ, Քաղաքում բան հարցնելու կարիք չկա: Ղազարն ասում է, թե՝ բա, Քաղաք ենք հասել, ժամ չգնա՞նք: Ոտքերը հանում է, մտնում է գետը: Մեկն ասի՝ ծո թսա'ն Ղազար, դու ո՞ր օրվա գետ կտրողն ես:

Մի երկու ոտք փոխում է, սայթաքում-ընկնում է քարերին, ջուրը քշում է ներքև, ուզում է խեղդի: Ղազարն աղաչում է Նազարին, թե՝ հալալ ախպարս, փրկի'ր, թոռներս սոված կմնան:

Նազարի ոտքը տեղ է անում: Սոված՝ թուքը կուլ է տալիս, թե՝ Ղազա'ր ախպար, մտնեմ ջուրը, պետք է ես էլ խեղդ-

վեմ, դու էլ: Ի՞նչ ես ասում, լավ չէ՞ մեկս խեղդվի, քան՝ երկուսս:

Ղազարը հենց լսում է, զկրտում է, կերածը իրար է գալիս:

- Նազա՛ր ախպար,- սարսափած ոռնում է նա:- Փրկի՛ր, գոնե գյուղին լուր տանենք: Գիտե՛մ, արածս մարդու բան չէ:

Նազարն ափսոսում է, ձեռքը գցում հանում է Ղազարին: Ղազարը խելքի է գալիս, նայում է Նազարին, ուզում է մի կերպ ասի, թե՝ արածդ շատ չհամարես՝ մի բան չէր:

- Ō՛ռ, դու գիտե՞ս ում հացն ես կերել,- դիմում է նա Նազարին:- Իմացար բա՞ն ես արել: Մի ձեռք ես տվել էլի: Վախեցար գյուղի ճանապարհը կկորցնես, դրա համար ջրից հանեցիր:

Նազարը մնում է բերանը բաց: Իսկապես՝ կարմիր կովը կաշին չի փոխի:

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ


ԵՐԿՈՒ ԽՈՍՔ ԱՅՍ ԳՐՔԻ ՍՏԵՂԾՄԱՆ ՄԱՍԻՆ . . . . . . . . . . . . . . . . . . . . . . 3

**ՋԱՎԱԽՔԻ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՀԵՔԻԱԹՆԵՐ . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . 9**

ԵՐԵՔ ԹԱԳԱՎՈՐ ԵՎ ՄԵԿ ՆԱՎԱՎԱՐ . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . 10

ԱՆԹԻՈՒ ԱՇԽԱՐՔ ԷՐԹՑՈՂ ՏՂԱՆ . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . 12

ԷՐԿՈՒ ԱԽՊԱՐ . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . 19

ՕԽԽԱ՜Յ . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . 23

ՊԻԼՊԻԼԻՆ ՀԵՔԻԱԹԸ . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . 28

ԾՈՎՈՒ ԱՂՋԻԿԸ . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . 34

ՄԻՍՈ . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . 42

ԿԱԽԱՐԴ ԱՐԱՊԸ . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . 53

ԷՐԶՐՈՒՄՈՒՄ ՄԱՐԴ ՉԵՂԱՎ, ՍՏԱՄԲՈԼՈՒՄ ԱՂԱ ԷՂԱՎ . . . . . . . . . 58

ՕՐԹՄԱ . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . 76

ՆՈՅ ՆԱՎԱՊԵՏՆ ՈՒ ՕՁԸ . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . 77

ՀԱՅՐ ԱԲՐԱՄԸ . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . 80

ՀԵՌԱՏԵՍ ՄԱՐԴԸ . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . 85

ԱԳԱՀ ՏԵՐՏԵՐԸ . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . 87

ԹՋՈՒԿԸ . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . 89

ԱՂՔԱՏ ԾԵՐՈՒԿԸ . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . 92

ԲՈԽՉԱՋԻ ԹԱԳԱՎՈՐԸ . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . 94

**ԶԱՆԱԶԱՆ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆՆԵՐ . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . 97**

ԱՂՎԵՍԸ ՄՇԱԿ . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . 98

ԳՈՂԵՐԸ . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . 98

ԴԱՎԱՆ ԳՈՂՑԱՆ . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . 98

ԿԱՇԻՆ ՉՈՐՑՆԵՆԿԸ . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . 99

ՄԱՀԱՑԱԾԸ . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . 99

ՈՂԲԱՑՈՂ ԿՆԻԿԸ . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . 100

ՈՒՌԱԾ ԿՈՎԸ . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . 100

ՉԱՅՆԻԿ ԿԵՓԵ . . . . . . . . . . . . . . . 101
ՄԵ ԼԻՏՐԸՄ ՆԱՎԹ ՏՎԵՔ . . . . . . . . . . . . . . . 101
ԳՈՂ ՄՈԼԼԱՆ . . . . . . . . . . . . . . . 102
ԽՈՋԱՅԻՆ ԿՆԻԿԸ . . . . . . . . . . . . . . . 102
ՍՏԱԽՈՍ ԽՈՋԱՆ . . . . . . . . . . . . . . . 103
**ՄԵՐ ՋԱՎԱԽՔԻ ՋՐՈՒՑՆԵՐԸ . . . . . . . . . . . . . . . 105**
ԲԱՋՄԱՋԱՆԸ . . . . . . . . . . . . . . . 106
ԾԱԿ ԼՑՆՈՂ ՊՈՂՈՍԸ . . . . . . . . . . . . . . . 113
ՈՍԿՈՒ ԿԱՐԱՍԸ . . . . . . . . . . . . . . . 120
ՍՐԱՓԸ . . . . . . . . . . . . . . . 124
ԾՈ, ՁԵՐ ՔԱՂԱՔԸ . . . . . . . . . . . . . . . 128
ԱՄՈԹՈՎ ՄՆԱՑ . . . . . . . . . . . . . . . 133
ԱՇԽԱՐՀԲԵԿԸ . . . . . . . . . . . . . . . 136
ԱՍՏԾՈՒ ԿԱՄՔՈՎ . . . . . . . . . . . . . . . 141
ՎՃԻՌԸ . . . . . . . . . . . . . . . 144
ԿԻՐՈՆ . . . . . . . . . . . . . . . 147
ԿԱՐՄԻՐ ՇԱԼՎԱՐԸ . . . . . . . . . . . . . . . 150
ՆԱՋԱՐՆ ՈՒ ՂԱՋԱՐԸ . . . . . . . . . . . . . . . 154
ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ . . . . . . . . . . . . . . . 157

«ՄԻՏՔ» ՎԵՐԼՈՒԾԱԿԱՆ ԿԵՆՏՐՈՆ

# ՋԱՎԱԽՔԻ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՀԵՔԻԱԹՆԵՐ ԵՎ ԶՐՈՒՅՑՆԵՐ



ISBN 978-99941-2-649-1

Տպագրությունը՝ օֆսեթ
Չափսը՝ 64x90 1/16
Թուղթը՝ կավճապատ
Ծավալը՝ 10 տպ. մամուլ
Տպաքանակը՝ 500 օրինակ

TopPrint
0014, Հայաստան, ք. Երևան, Ադոնց 13/7
Էլ. փոստ՝ info@topprint.am
Հեռ՝ 060 44 86 77

